


# «ՓՈԽԱՐԻՆՈՂՆԵՐԻՆ՝ ՓՈԽԱՐԻՆՈՂՆԵՐ»

Պիոներիայի 60-ամյակին նվիրված «Փոխարինողներին՝ փոխարինողներ» նշանաբանով համամիութենական ռադիոտողանը տեղի ունեցավ հոկտեմբերի 2-ին՝ Վ. Ի. Լենինի 1920 թվականին ՌԿԵՄ 3-րդ համագումարում ունեցած ելույթի օրը:

Ռադիոտողանին լավ էր պատրաստվել Երևանի № 50 դպրոցի Միսաք Մանուշյանի անվան պիոներական դրուժինան:








digitised by A.R.A.R.@




Բնության մեջ ծույլեր չկան,
Ամեն մեկը իր գործն ունի.
Ե՛վ կաչաղակը կչկչան,
Ե՛վ փոքրիկ ամպը անհունի...

Ի՞նչ կլիներ, ասա, խնդրեմ,
Եթե անձրևը ծուլանար,
Գիշերն անվերջ շարունակվեր,
Որ նույն է թե՝ չլուսանար,

Սերմը քներ տարին բոլոր,
Դաշտը բնավ չկանաչեր,
Մեղվապարսը աշխատավոր
Բույր ու ծաղիկ չճանաչեր,

Եթե քամին պառկեր անվերջ
Որևէ մութ քարանձավում,
Ցավը ննջեր մարմնի մեջ,
Իբր՝ ոչինչ էլ չի ցավում,

Ծառ չտնկվեր,
Պատ չշարվեր,
Հաց չթխվեր,
Շոր չկարվեր,
Գիրք չգրվեր,
Գետ չհոսեր,
Մարդ չծնվեր,
Կամ՝ չխոսեր...
Չքայլեին...
Չտեսնեին...
Չձգտեին...
Չհասնեին...

Չիմանային չարն ու բարին,
Չունենային ջանք ու փափագ,
Չայցելեին մեր աշխարհին
Մայրամուտ ու արևածագ...

Բնության մեջ ծույլեր չկան,
Ամեն մեկը իր գործն ունի.
Ե՛վ կաչաղակը կչկչան,
Ե՛վ չնչին ամպը անհունի:



digitised by A.R.A.R.@

ՀՈՎԻԿ ՎԱՐԴՈՒՄՅԱՆ

# Հողի հիշողությունը



Բոլորս հեռացանք գյուղից: Ե՛վ Եսայի հորեղբորս տղան, և՛ Անուշավան հորեղբորս, և՛ Հովհաննես հորեղբորս մեծ տղան: Բոլորս գնացինք: Մնաց միայն Հովհաննես հորեղբորս փոքր տղան: Մեզնից հետո մեր տները կամ քանդվեցին, կամ ծերությունից կորացած, կուչ եկած, եկող-գնացողի են սպասում: Միայն Հովհաննես հորեղբորս տունն է կենդանի, որովհետև այնտեղ մարդկային շունչ կա, ներսուդուրս անող կա, այգին ջրող կա, հողը փորող-ցանող կա:

Գյուղում մեր միակ ներկայացուցիչը Հովհաննես հորեղբորս փոքր տղան է: Նա է պահում չորս տների հիշողությունները, մեր պապերի, հայրերի մասին եղած պատմությունները, նրանց ձայները: Եվ երբ մեկնումեկս գյուղ ենք գնում, մեզնից անկախ բռնում ենք նրա տուն տանող ճանապարհը, որովհետև նա է պահում մեր տների ավերակները, մեր մանկությունը:

Այնպես անկեղծ է ժպտում, այնպես տաք, որ մարդ հանկարծ գլխի է ընկնում, որ իսկական հանգիստը, իսկական երջանկությունն այստեղ է, այս մաքուր ժպիտի մեջ, այս հին, մրոտված պատերի, այս փոքրիկ, ցանկապատված սևահողի մեջ, որը, սկսած անհիշելի ժամանակներից, մեր պապերի, մեր նախապապերի համար հաց է աճեցրել, թութ, դեղձ ու բալ, և շարունակում է աճեցնել, և տղաներ է ծնում... Եվ ծերացած, հոգնած մարդկանց առնում է իր գիրկը:

Մենք շատ բան ենք մոռացել, շատ բան չենք հիշում, իսկ նա ամեն ինչ հիշում է: Դրա համար հարկավոր է վերադառնալ, այս հողի վրա թեկուզ փոքրիկ խրճիթ կառուցել, հին, մեռած ծառերի փոխարեն նորերը տնկել, հողը փխրեցնել, ցորեն ցանել, կարտոֆիլ, որպեսզի հողի հիշողությունը, ծառերի արմատներով բարձրանա ընդերքից, որպեսզի հողի մեջ շան քոթոթների նման կարտոֆիլներ աճեն, որ այնպիսի հաց թխենք, որի հոտը տարածվի գյուղի մի ծայրից մյուսը: Ահա, այդ ժամանակ ամեն ինչ կհիշենք: Անցած մոռացված հիշողությունները կկենդանանան, և ոչինչ չի մեռնի, ոչինչ չի կորչի, ոչինչ...

— Հիշու՞մ ես,- ժպտալով ասում է հորեղբորս փոքր տղան,— հորդ պիտի գնացքով Երևան տանեին... Վիրավորվել էր Հյուսիսային Կովկասում: Հեռագիրն ստացանք: Քեզ շալակեցի, տատի հետ, մորդ հետ գնացինք... Չե՞ս հիշում...

— Չե՞ք հիշում... — զարմանում է, -1942 թվականին էր: Սարիբեկ հորեղբայրը հեռագիր էր տվել, իջանք կայարան...

Ոչ ոք չի հիշում: Ի՞նչ հիշեն: Ինչպե՞ս հիշեն, երբ մենք հողին ենք օտարացել, հողը՝ մեզ, ո՛չ խոսում է, ո՛չ կանչում, ո՛չ լսում մեր ձայնը:



ՀԱՍՀ-Арм.ССР
12119-ԱԿ
digitised by A.R.A.R.@

— Չե՞ք հիշում... — ջղայնանում է:
— Ես փոքր եմ եղել,— արդարանում եմ,— ինչպե՞ս կարող եմ հիշել:
— Փոքր է եղել,— միաբերան հաստատում են բոլորը:
— Բայց դուք մեծ եք եղել,— Հովհաննես հորեղբորս փոքր տղան հերթով նայում է բոլորին և հողոտ, կոշտացած ձեռքերը դնում ձյունաճերմակ սփռոցին:

Զգում եմ, որ ասածս տեղին չէր, որ հիշողությունը կապ չունի տարիքի հետ: Որ այն մնում է ոչ միայն մարդու աչքերի, ականջների, մաշկի և ուղեղի, այլև իր տան, ժամանակից սևացած պատերի ու հողի մեջ, որտեղից սկիզբ է առել ինքը, որտեղ ապրել ու մահացել են իր նախնիները: Իսկ երբ մարդը թողնում է այդ ամենն ու գնում, այնտեղ մնում են նրա հուշերը և խռովում, խորթանում, կարծես անծանոթ են՝ իրենը չեն:

— Գյուղում առաջին տրակտորը Սարիբեկ հորեղբայրն էր քշում,— նորից ժպտալով նայում է ինձ,— էդ ինչքա՜ն լավ մարդ էր... Ասում էին՝ պատերազմ չեն տանելու, մեխանիզատորները քիչ են: Ամիսներով տուն չէր գալիս, դաշտերում վարում էր, ցանում, հնձում: Հունձը չվերջացրած՝ տուն եկավ լողանալու, սպիտակեղենը փոխելու... Թուղթ էինք ստացել, կանչում էին: Բան չհասկացանք, թե դեռ արտերը չհնձած, չվերջացրած՝ ինչու՞ տարան... Դավիթ հորեղբոր հետ էին գնում: Դավիթ հորեղբայրը հուզվել էր, իսկ նա ծիծաղում էր՝ կհաղթենք, կվերադառնանք...

Տխուր հիշողություններ են: Սիրտներս լցվում են: Մի պահ նայում եմ սեղանին: Ձյունաճերմակ սփռոցի վրա անհանգիստ շարժվում են հինգ զույգ ձեռքեր: Մերոնք գորովանքով նայում են միմյանց: Մենք աստիճանաբար մոտենում ենք իրար: Մեր ձեռքերն աստիճանաբար մոտենում, մոտենում են, ու Հովհաննես հորեղբորս փոքր տղան, առանց ձևականությունների, առանց վախենալու, վերցնում է մեր ձեռքերն ու դնում իրար վրա:

— Այսպե՛ս... — հանգստացած շունչ է քաշում, և մենք հրաշքով վերափոխվում ենք: Դատարկվում է մեջներս եղած դառնությունը, հոգնածությունը, կեղծիքը, ձևականությունները... Մի ակնթարթում հրաշքով մաքրվում ենք: Զգում եմ, որ մինչ այդ, չգիտես ինչու, փախցնում էինք հայացքներս, չգիտես ինչու, վախենում էինք նայել միմյանց:

Եվ մի ակնթարթում մաքրվում ենք, բարձրացնում հայացքներս, նայում իրար աչքերի մեջ: Արյունը խշշոցով բարձրանում է, դեմքներս լուսավորվում են, և ծիծաղում ենք, նայում մեկմեկու, ծիծաղում:

Ներս են գալիս, արդեն ծերացած, հորեղբայրներիս ետևից կարոտով նայող նրանց թագուհիներն ու զարմացած նայում մեզ:

— Գժվեցի՞ք... — ժպտադեմ կանչում է Հովհաննես հորեղբորս կինը և նույնպես սկսում է ծիծաղել: Գալիս են մեր կանայք և ծիծաղում են: Գալիս են մեր երեխաներն ու թոռները և ծիծաղում: Գալիս են բոլոր գյուղացիներն ու ընկրսում ծիծաղել:

Ու ես պարզ հիշում եմ, թե ինչպես Հովհաննես հորեղբորս փոքր տղայի ուսերին նստած իջա կիսակայարան, հորս դիմավորելու... Գնացքը սուլեց, առանց ընթացքը դանդաղեցնելու անցավ, և մեկը վագոնի բաց պատուհանից գոռաց.

— Սարիբեկին տանում են Երևա՜ն... Չի կարողանում ոտքի կանգնել, ոտքերը վիրավոր են... Եկեք Երևա՜ն... Սարիբեկին տանում են Երևա՜ն...



digitised by A.R.A.R.@

ԴՐՈՒԺԻՆՆԵՐՈՒՄ



ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

# ԱՌԱՆՑ ՀՐԱՇԱԳՈՐԾ ՓԱՅՏԻԿԻ

Լենինականի Ս. Մուսայելյանի անվան դպրոցի Եգոր Սևյանի անունը կրող դրուժինայի պիոներները դեռ ուսումնական տարվա սկզբին, երբ ընտրեցին «Ուսման մեջ և աշխատանքում՝ գերազանց» նշանաբանը, քաջ գիտեին, որ միայն լավ նշանաբանը ոչ մի գործ տեղից չի շարժի, եթե ոգևորված չաշխատեն:

Հայաստանի կոմերիտմիության 60-ամյակի առթիվ դրուժինայի մի քանի ջոկատներ, շատ ու շատ պիոներներ իրենց խոստումը կատարեցին առանց հրաշագործ փայտիկի օգնության: Գայի անվան ջոկատն այդ տեսակետից լավ օրինակ ծառայեց: Այստեղ չկա ոչ մի «երկու» գնահատական, ոչ մի անհարգելի բացակայություն, կարգապահությունը բարձր է: Այսքանն էլ բավական է, որ մյուսները բարի նախանձով հետևեն նրա օրինակին: «Ինչո՞ւ մենք էլ այդպիսին չլինենք»,— հավաքույթի ժամանակ միմյանց ասացին Ն. Ստեփանյանի անվան ջոկատի պիոներները, և քանի որ մյուս ջոկատները պատրաստակամությամբ օգնության ձեռք մեկնեցին, ոգևորությամբ գործի անցան:

Ղ. Ղուկասյանի անվան ջոկատն էլ նրանցից ետ չմնաց, և շարժումը ուսման որակի համար ընդգրկեց ողջ դրուժինան: Հայաստանի կոմերիտմիության 60-ամյակը դրուժինան դիմավորեց ուսման բարձր առաջադիմությամբ: Նա միաժամանակ բարեկամական կապերի մեջ է Իջևան—Հրազդան երկաթգծի շինարարների հետ: Արդեն 40 ձայնապնակ և 32 կտոր գիրք են նվիրել և այդքանով գործը չեն համարել ավարտված: Նամակագրություն է սկսվել պիոներների և շինարարների միջև, նրանք միմյանց զեկույցներ են տալիս ուսման մեջ և աշխատանքում ձեռք բերած հաջողությունների մասին, հեռվից հեռու միմյանց ոգևորում: Այդպիսով, օրեցօր հարստանում է պիոներների ստեղծած ալբոմը, որը պատմում է այդ բարեկամության մասին, այն մասին, թե ինչպես է մեր օրերի խիզախների՝ կոմերիտականների աշխատանքային սխրանքներով՝ կառուցվում նոր երկաթուղին:

Դրուժինայում մեկ ուրիշ աշխատանք խոսում է «Միլիոն՝ հայրենիքին» օպերացիային պիոներների ակտիվ մասնակցության մասին»: Հատկապես Գայի անվան ջոկատն այս ուղղությամբ շատ գործ է կատարել:

Ջոկատի պիոներները «Պիոներկառույց» օպերացիայի շտաբին արդեն հանձնել են 300 կգ թղթի թափոն: Աշխատանքային խանդավառությունը վարակել է նաև մյուս ջոկատներին: Դրուժինայում պարտավորվել են լենինյան պիոներիայի 60-ամյակի առթիվ հավաքել և պետությանը հանձնել 3 տոննա թղթի թափոն:

Ուշագրավ մի գործ էլ Ղ. Ղուկասյանի անվան ջոկատի պիոներներն են սկսել: Նրանք Լենինական քաղաքին նվիրված ալբոմ են պատրաստում, որտեղ պատմում են քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների, գործարանների մասին, էքսկուրսիաներ են կատարել այդ ձեռնարկություններն ու գործարանները, հանդիպել աշխատանքի հերոսների հետ, ծանոթացել նրանց հայրենանվեր գործերին:

Անմոռաց ու տպավորիչ էր հանդիպումը Մյասնիկյան ապստամբության անվան կոմբինատում, լոկոմոտիվային դեպոյում, որտեղ աշխատում են շատերի հայրերն ու մայրերը, քույրերն ու եղբայրները: Այս հետաքրքիր ծանոթությունները շատ բանով են օգնում պիոներներին՝ ճանաչելու հայրենի քաղաքը:

*ՍԱՄՎԵԼ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ*



digitised by A.R.A.R.@

# ԴԺՎԱՐ ՈՒ ՀԵՇՏ

— Քանի՞ տարեկան ես,— մի ան գամ հարցրի մի երեխայի:

— Եկող տարի յոթն եմ:

Վերջապես եկել էր այն օրը, որին սպասել, երազել էին երկար: Երևանի № 114 դպրոցի առաջին դասարանում բոլորը սաստիկ հուզված էին: Մի աղջըկա համար վիճակն այնքան էր անսովոր, որ լաց էր լինում ու կանչում.

— Մայրիկիս եմ ուզու՜մ, մայրիկիս եմ ուզու՜մ...

— Աղջի՛կ ջան, ես այստեղ եմ,— ասաց ընկեր Սաֆարյանը: Լաց լինող աղջիկը զարմացած լռեց:

— Եթե չես ուզում երկրորդ մայրիկդ լինեմ, կլինեմ երկրորդ տատիկդ: Իմ թոռնիկը մի քանի տարի առաջ դպրոցըն ավարտեց, ես առաջին դասարանում նրան դաս եմ տվել: Այնպես որ դուք իմ թոռնիկից էլ փոքր եք, իմ փոքրիկ թոռնիկներն եք:

Ուսուցչուհին այն օտար ու գերբնական արարածը չէր, որպիսին նրան շատերը պատկերացրել էին, այլ՝ քընքուշ ու բարի, իրենց հարազատ տատերի նման մի տատիկ էր, և երեխաները աշխուժացան, աղմկեցին:

— Աղմկել չի՛ կարելի:

Ուսուցչուհու ձայնը խիստ էր, բայց հարազատի, սիրողի խստություն էր, և երեխաները թեև լռեցին, ներքուստ մնացին աշխույժ: Ընկեր Սաֆարյանին էլ հենց դա էր պետք: Գրատախտակին վանդակների երկու շարք գծեց, ապա վերևի շարքում սկսեց քաշել մեկ թվանշանի գլխի պոչերը, իսկ ներքեվում՝ ուղղահայաց գիծը: Հետո վանդակներից դուրս այդ երկուսը միացրեց: Ես մտածեցի. «Ի՞նչ նշանակություն ունի, թե որտեղից, ինչպես կըսկըսեն գրել, մեկ գրելու մեջ ի՞նչ կա»:

—Հիմա ո՞վ կփորձի,— հարցրեց ընկեր Սաֆարյանը, և բոլորը ձեռք բարձրացրին:

Երեխաները հերթով մոտենում էին գրատախտակին և առանց ընկեր Սաֆարյանի օգնության չէին կարողանում ուղիղ գիծ քաշել: Մեզ համար, որ վաղուց ենք հաղթահարել այդ դժվարությունները՝ տառ կամ թիվ գրելը դարձել է շնչելու, քայլելու պես սովորական բան, ծիծաղելի է թվում մեկ գրելու դժվարությունը, բայց արի ու տես, որ առաջին դասարանցիներից ոմանք նույնիսկ քրտնում էին գիծը քաշելիս, տառապում:

Մի ամաչկոտ աղջկա, որն ուսուցչուհու օգնությամբ վերջապես ավարտեց «մեկը», ընկեր Սաֆարյանը հարցրեց.

— Անունդ ի՞նչ է:

— Նվարդ,— հայացքը կախ, պատասխանեց աղջիկը:

— Ի՜նչ հրաշալի անուն ունես: Այդպիսի անուն ունեցողը պետք է միայն գերազանցիկ լինի,— ասաց ընկեր Սաֆարյանն ու դարձավ դասարանին.

— Բոլորդ էլ ապրեք, խելոք երեխաներ եք: Ձեր դասարանում շատ գերազանցիկներ կլինեն:

Ես հասկացա, որ առաջին ամիսներին բավական չէ միայն որևէ տառ կամ թիվ սովորեցնելը: Ամենակարևորը երեխաներին համոզելը, վստահեցնելն է, որ եթե ցանկանան, եթե սովորեն, ամեն ինչի կհասնեն:

*ՍՏԵՓԱՆ ԶԱՔԱՐՅԱՆ*



digitised by A.R.A.R.@




*ՎԱՀԱԳՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ*

Պատկերացրու, Սանասարը՝ երեսունհինգամյա աժդահա տղամարդ, Գագիկը՝ հինգ-վեց տարեկան մի թիզ երեխա, և, ի՞նչ ես կարծում, ո՞վ է բերանը ջուր առած կանգնել մյուսի առաջ. քեռիդ՝ Սանասարը։ Ենոքն իմ հորեղբորորդին է, ուրեմն, խնամի է իրեն՝ Սանասարին, և ահա Սանասարը գյուղից եկել է, որ թանկագին հյուր լինի, «բարո՛վ, հազա՛ր բարով, գլխիս վրա տեղ ունես» լսի, իսկ խնամի Ենոքի փոխարեն դուռը այդ թիզուկեսն է բացում, որը ո՛չ Սանասար գիտի, ո՛չ բարեկամություն, ո՛չ հարգանք ու պատիվ։ Դուռը բացել է, բայց ճանապարհ չի տալիս, իսկ Սանասարն էլ հո չի՞ խնդրելու, հո չի՞ համոզելու այդ մի մատ լակոտին. եթե ներս է մտնելու, ապա խնամուն վայել հարգանքով ու պատվով։ Եվ ծպտուն չի հանել։ Քո իմացած ձևով, ո՞նց որ ինքն է կարողանում, խռոված շըրջում է գլուխը, մի կողմ նայում, իբր ո՛չ դուռ են բացել իր առաջ, ո՛չ էլ ինքը մարդ է տեսնում։ Պարզ է, հույս ունի, որ հրես-հրես Ենոքը կերևա ու իրեն մարդավարի ներս կառնի։ Բայց Սանասարի բախտից Ենոքը կնոջ հետ չգիտեմ ուր է գնացել, ու միայն այդ սատանան է տանը։ Ուրեմն, այդպես լուռ կանգնել են, Սանասարն իբրև չի նկատում Գագիկին, սա էլ ներքևից վերև չափում է աժդահա քեռուն և վերջապես ասում այն, ինչ պիտի ասեր. «Լեզու չունե՞ս, քեռի՛»,— ասում է։ Մի ժամանակ իրեն այդ հարցը շատ են տվել, հիմա ինքն է տալիս, գտել է իրենից խեղճին։ Պատկերացնում եմ Սանասարի վիճակը. թե տղա ես, հիմա էլ մի նկատիր այդ սատանային։ Բայց ո՞նց չնկատես, եթե նա իր թլվատ լեզվով քո լայն մեջքը գետնովն է տալիս։ Ու ավելի լավ բան չի անցել մեր Սանասարի մտքով, քան ապացուցել, որ չէ, ինքը լեզու ունի և ավելի հարմար բան չի գտել ասելու, քան ներ-



digitised by A.R.A.R.@

կայացնել իր յոթը պորտը. էսինչի ու էսինչի տնից եմ, էսինչի թոռը, Ենոքի էլ հորեղբորորդու աներձագը: Տնաշեն, անուն չունե՞ս, անունդ ասա, երեխայի հետ մարդավարի խոսիր, ասա՝ բալիկ ջան, էսպես ու էսպես, ես Սանասար քեռին եմ, գյուղից եմ եկել, եկել եմ հայրիկիդ տեսնելու, քեզ համար էլ էս ու էս բաներն եմ բերել, արի օգնիր ներս տանենք, մինչև հայրիկդ գա: Մի խոսքով: Թե չէ՝ Ենոքի հորեղբորորդու աներձագ: Գագիկն էլ արել է այն, ինչ պիտի աներ. ծիծաղել է Սանասարի երեսին ու դուռը շրխկացրել նրա քթի առաջ: Ու նստել է մեր Սանասարն իր քամած մածնի, ձվերի ու լավաշի կողքին, գլխարկը հանել ճակատի քրտինքն է սրբել, նորից գլխարկն աչքերին քաշել, այսպես մինչև երեկո, մինչև Ենոքն ու իր կինը տուն են եկել:

Այսպես է եղել: Մարդ ոտքերն իր վերմակի չափով պիտի մեկնի, եթե մի մատ երեխայի առաջ ես խեղճանում, ինստիտուտի հետ ո՞նց ես լեզու գտնելու: Բայց ինստիտուտի մասին Սանասարը սկզբում ոչինչ չի ասել: Ենոքը պատմում էր, որ ինքն այդպես էլ չի հասկացել, թե ինչն է Սանասարին Երևան բերել: Ենոքն այն ժամանակ մի սենյակ ուներ, հազիվ իրենք էին տեղավորվում, բայց դե ի՞նչ պիտի անեն, Սանասարին ինչպես պետքն է ընդունել են, աշխատում են այնպես անել, որ ամեն ինչ տեղին ու ժամանակին լինի, իսկ իրենց մեջ զարմանում են, որովհետև Սանասարը նման չի գործով Երևան եկած մարդու. տնից դուրս չի գալիս, բան-ման առնելու չի գնում, առավոտից իրիկուն ձեռքը ծնոտին դրած նստում է սեղանի առաջ: Ինձ թվում է սկզբում Սանասարը մտադիր է եղել գործը սուսուփուս գլուխ բերել: Գյուղում ամեն ինչ հեշտ է թվացել, բայց երբ մի ամբողջ կես օր չարչարվելուց հետո հազիվ է գտել Ենոքի տունը, երևի, խեղճացել է: Բայց դե ինչքա՞ն կարելի է ձեռքերը ծալած նստել: Մի խոսքով, երկրորդ թե երրորդ օրվա երեկոյան Սանասարս բացվում է: Սկսում է հեռվից, պատեպատ ընկնելով: Երբ վերջապես խոսում է ինստիտուտից, Ենոքը զարմանում է. Սանասարի երեխաները, ճիշտ է, փոքր չեն, բայց դեռ դպրոցական են, ի՞նչ ինստիտուտ, ի՞նչ բան: Սանասարը թե՝ երեխաները չէ՝ ինքն է ուզում ընդունվել: Խե՛ղճ Ենոք, արի ու հավատա ականջներիդ: Ասում էր, որ մնում-մնում էլի սկսում էր կասկածել՝ արդյո՞ք ճիշտ է հասկացել Սանասարին: Մի խոսքով, չերկարացնեմ, Սանասարը խնդրում է օգնեն իրեն՝ ինստիտուտի տեղը չգիտի, գրքեր չունի: Առավոտյան Ենոքի հետ գնում են, գործերը հանձնում, գրքերն էլ, կարծեմ, Ենոքի քենին է բերում: Եվ Սանասարն սկսում է պարապել: Ենոքը պատմում էր, որ ամբողջ օրը պատշգամբում նստել է բաց գրքի առաջ, բայց աստված գիտե, թե ուր նայել: Դե պարզ է, որպեսզի կարդաս ու հասկանաս, ճիգ ու ջանք է պետք, իսկ երկնքին նայելով կարելի է սրտի ուզածի չափ երազել, որ արդեն ընդունվել ես, արդեն ուսանող ես, ահա արդեն ավարտեցիր, ահա ուսուցիչ դարձած գյուղ ես եկել, և մեծ ու փոքր, բերանները բաց, քեզ են նայում: Սա է եղել քեռու պարապելը:

Իսկ գյուղում ոչինչ չգիտեն: Մենք էլ չգիտեինք: Մի օր աշխատանքից տուն եմ գալիս, մորդ երեսին գույն չկա: Ի՞նչ է պատահել, ա՛յ կնիկ, էս ի՞նչ օրի ես: Եղբայրս կորել է: Ո՞նց թե կորել է: Շատ պարզ, ոնց են կորչում՝ կար, հիմա չկա. մի բան արա, գտիր եղբորս: Ի՞նչ պարզվեց: Մի շա-



digitised by A.R.A.R.@

բաք առաջ տանն ասել է, թե գնում է քրոջ մոտ, այսինքն, մեր տուն է գալիս, մի քանի օր կմնա: Հավ են մորթել, լավաշ թխել, մածուն ու ձու դրել շալակը, և Սանասարիս ճամփել քրոջ մոտ: Բայց մի քանի օրն անցնում է, շաբաթ դառնում, իսկ Սանասարը չկա ու չկա, և ինչ-որ մեկին, որ մեր կողմերն է գալիս, խնդրում են, որ մեր տուն անցնի, տեսնի Սանասարն ինչ եղավ, ինչու չի վերադառնում: Էլ ի՞նչ: Այդ մարդը գալիս է մեր տուն, իսկ մայրդ Սանասարի երեսն անգամ չի տեսել: Պատմեց մայրդ այս բոլորը, ու ես էլ անհանգստացա: Անպայման մի բան է պատահել, եթե մարդը տեղ չի հասել, ոչ էլ ետ է գնացել: Իհարկե, հանգստացնում եմ մորդ, «Սանասարը,— ասում եմ,— ասեղ չի, կգտնենք», բայց մտքովս հազար ու մի չար կասկածներ են անցնում: Շատ դեսուդեն ընկա, էլ ում ասես, որ հարցուփորձ չարի, վերջապես մի ընդհանուր ծանոթ ասաց, որ, մոտավորապես մի շաբաթ առաջ Սանասարը կարծես թե աչքովն ընկել է: Որտե՞ղ: Ավտոկայանում: Ի՞նչ էր անում: Կարծեմ Երևանի ավտոբուսը նստեց: Անհա այսպես հետքի վրա ընկանք: Ուրեմն, Սանասարին, ողջ թե մեռած, պետք է Երևանում փնտրել: Առավոտյան Երևան մեկնեցի: Իսկ Երևանում ուրիշ ոչ ոք չունեմ, Ենոքի մոտ պիտի գնամ: Մտածում եմ, Ենոքի հետ խելք-խելքի տանք, տեսնենք ինչ ենք անելու: Հասա Ենոքենց տուն, զանգը տվեցի: Դուռը Սանասարը բացեց: Պատկերացրու իմ զարմանքը: Թվում էր, Սանասարը չի, տեսիլք է:

«Ա՛յ տղա,— ասում եմ ուշքի գալով,— ի՞նչ ես անում այստեղ: Գիտե՞ս, որ վրադ արդեն լաց են լինում»: Գլուխը կախել, չի պատասխանում: Տանը մարդ չկար, նստեցինք, երկար խոսեցինք: Ամեն ինչ խոստովանեց: Ասացի, որ խելքը թոցրել է: «Ուզում եմ մարդ դառնալ»,— ասում է: «Մինչև հիմա ի՞նչ էիր, մարդ չէի՞ր»,— հարցնում եմ: Լռում է: «Եթե արածդ խելոք բան է,— ասում եմ, —ինչո՞ւ ես թաքուն եկել, գողի նման: Ասեիր, որ կնիկ, երեխա թողնում, գնում ես սովորելու: Իրենք թող իրենց գլխի ճարը տեսնեն, քոնը սովորելն է»: —«Գոնե դու էդպես մի′ խոսիր,— ասում է,— դու հո ինստիտուտ ավարտել ես»: —«Իմն ուրիշ է,— ասում եմ,— ես ժամանակին եմ սովորել: Իսկ դու գոնե մի քիչ էլ սպասեիր, աղջիկներիդ մարդու տայիր, հետո գայիր»: Վերջապես լեզուն բացվեց: «Գուցե դու ճիշտ ես,— ասում է,— մի քիչ ուշացրել եմ, բայց սովորելը վաղուց կար մտքումս: Գուցե սկզբում չկար, բայց ինչքան մեծացա, էնքան շատ էի մտածում, որ կարելի էր ավելի խելացի ապրել»:— «Խելացի,— քմծիծաղում եմ ես:— Քո կարծիքով, ո՞ր մեկն է լավ՝ հողի հետ գործ ունենալ, թե՞ բըթամիտ ու անկարգ աշակերտների: Ես որ բարձրագույն կրթություն ունեմ և ուսուցիչ եմ, կարծում ես, քեզանից խելացի՞ եմ ապրում»: Գլուխն օրորեց, ասում է. «Երևի միտքս լավ չբացատրեցի: Ուզում էի ասել, որ ինչքան շատ իմանաս, շատ տեսնես, շատ անես, էնքան լավ: Աշխարհում ինչե՞ր են լինում, իսկ ես գլուխս կախ իմ գործին եմ: Անասունինն ուրիշ է՝ կեր ու բանիր: Իմը ո՞նց է լինելու, ի՞մն էլ՝ կեր ու բանիր: Ուրեմն, էն՝ ինչ որ կա սրտումս, հե՞չ: Ոնց ինձ հետ աշխարհ է եկել, էդպես էլ գնալո՞ւ է: Գոնե չփորձե՞մ, հենց միայն համոզվելու համար, որ թեև սրտումս շատ կա, բայց ձեռքիցս չի գալիս: Փորձեմ, հանգըստանամ ու տեղս վեր ընկնեմ: Ձմեռվանից էս կողմ մտածում եմ՝



digitised by A.R.A.R.@

մարդիկ, հրե՞ն, ինչե՞ր են անում, ռադիոյով լսում ես, թերթերում կարդում, իսկ ես ոնց աշխարհ եմ եկել, էդպես էլ պիտի մեռնեմ, գնամ»: Լսեցի Սանասարին ու ասում եմ. «Ինչքան մարդ, այնքան էլ ճակատագիր, ու համարյա բոլորն էլ դժգոհելու բան ունեն: Բայց դժգոհելն իր տեղն ունի, պարտքն ու պատասխանատվությունը՝ իրենց: Ասա տեսնեմ, քանի՞սն են քեզ նման հիմարություն արել»: — «Չկարծես, թե միայն իմ մասին եմ մտածում,— ասում է Սանասարը:— Ինչ երեխեքս ծնվել են, իմ ուզածն էն է եղել, որ կուշտ ու առողջ մեծանան, լավ մարդ դառնան: Միշտ մտածել եմ, որ ինձ էլ ուրիշ ոչինչ պետք չի: Հիմա էլ եմ էդ մտքին: Բայց էս անտեր որդն սկսել է ներսից ինձ ուտել: Հավատա, էնպես խղճացի ինձ, որ էնքան խեղճ ու կըրակ եմ, իսկ կյանքը գնում է՝ խեղճ ու կրակ էլ պիտի մեռնեմ»: — «Մեռնելու մասին դեռ վաղ է մտածել,— ասում եմ,— փառք աստծո, առողջ ես, կյանքդ էլ նոր ես կես անում՝ երեսունհինգ տարեկան ես»: — «Ցավն էլ էդ է,— ասում է,— երեսունհինգ տարեկան եմ: Եթե էս տարի չընդունվեմ, եկող տարի տարիքս կանցնի, գործերս չեն վերցնի»: Տեսա, որ չէ, խոսելս իզուր է անցնում, ոնց շուռ եմ գալիս, նա էլի բերում իր ինստիտուտի առաջ է կանգնեցնում, ձեռք քաշեցի համոզելուց: Ավելի լավ է, թող իր ասածի պես փորձի ու հանգիստ տեղը վեր ընկնի: Այլևս այդ մասին չխոսեցի: Հենց նույն երեկոյան էլ վերադարձա: Մայրդ չէր ուզում հավատալ, կարծում էր, կատակ եմ անում, հնարել եմ, որ եղբոր հոգու հետ խաղամ: Մյուս օրը, կարծեմ, կիրակի էր, գյուղ գնացի: Էսպես ու էսպես, ասում եմ պապիդ, տղադ ողջ-առողջ է, շատ բարև էր անում: Որտե՞ղ է: Երևանում: Երևանում ի՞նչ է կորցրել: Ինստիտուտ: Ի՞նչ-ի՞նչ: Ինս-տի-տուտ, այդպիսի տեղ կա՝ երեխաներ, թոռան տեր հայրերն ու պապերն են սովորում, տառաճանաչ դառնում: Փրփրեց պապդ, թողեք, ասում էր, գնամ իմ ձեռքով շանսատակ անեմ, հենց իր Երևանում, հենց իր ինստիտուտի մեջ: Հետո հանգստացավ, բոլորի վրա մատ թափ տվեց, չլինի թե բերաններիցդ թողնեք, գեղով մեկ խայտառակ անեք մեզ: Իսկ ես ասում եմ, որ երեք օրից տանը կլինի: Որտեղի՞ց գիտեմ: Հասարակ թվաբանություն է. վաղը օգոստոսի մեկն է. օգոստոսի մեկին քննություն են հանձնում, երկուսին իմանում, որ կտրվել են, երեքին տուն են դառնում: Ուրեմն, երեքին Սանասարը կգա:

Ինչպես և պետք է լիներ, Սանասարը կտրվում է հենց առաջին քննությունից: Ըստ երևույթին, ուսանող դառնալու համար միայն ցանկությունը, նույնիսկ բուռն, բավական չէ: Եվ Սանասարը փոշմանած, կոտր ընկած տուն է դառնում: Այսինքն, Եռոքենց տուն: Եռոքը պատմում էր, որ երբ եկել ու տեսել է Սանասարին, միանգամից ամեն ինչ հասկացել է: Գիտե՞ս, թե քեռուդ խոշոր, խոնավ աչքերը ո՞նց են կարողանում տխրել: Եռոքն ասում էր, որ Սանասարի աչքերին նայել չէր լինում. նայում էիր, թվում էր, ինչ-որ բանում էլ դու ես մեղավոր: Դե, հասկանալի է, այդ օրն աշխարհը մթնել է Սանասարի համար, մարել է վերջին հույսը: Ամեն կերպ փորձել են մխիթարել Սանասարին, տրամադրությունը բարձրացնել: Եվ, իհարկե, բոլորից շատ՝ Գագիկը: Միայն թե Գագիկի համար Սանասար քեռու տըխրության պատճառն ուրիշ է եղել: Չգիտեմ գիտե՞ս, թե՞ ոչ, բայց ես այդ տարվանից հիշում եմ, որ քեռիդ ծըն-



digitised by A.R.A.R.@

վել է օգոստոսի երկուսին: Չգիտեմ, ինչն է դրդել Սանասարին, այնուամենայնիվ, երևի տխուր մտքերը, երևի անիծել է այն օրը, որ աշխարհ եկավ, մի խոսքով, Գագիկին ասել է, որ այսօր իր ծննդյան օրն է: Երեխան էլ սովոր, որ ծննդյան օրերին նվեր են տալիս, ինքն իրեն որոշում է, որ քեռին տխուր է, որովհետև ոչ ոք նրան նվեր չի տալիս, չի շնորհավորում: Կպչում է հորը, երեք ռուբլի պոկում, հետո էլ՝ ի՞նչ առնեմ քեռու համար, ու Ենոքի մտքով անցնում է, որ եթե Սանասարն այդքան ծարավի է ուսման, գիրք է սիրում...

Առավոտյան Սանասարը գյուղ պիտի վերադառնա: Հենց Ենոքենց շենքի տակ գրախանութ կար: Սանասարն իր հին ճամպրուկով, Գագիկն իր երեքանոցը բռի մեջ սեղմած, խանութ են իջնում: Այս բոլորն ինձ հետո Ենոքըն է պատմել: Պատկերացրու, թե ինչ զույգ են եղել աժդահա, շփոթված Սանասարն ու հինգ-վեց տարեկան թզուկ Գագիկը, որովհետև ամեն ինչ հակառակն է եղել՝ Գագիկն է ձեռքից բռնած առաջնորդել Սանասարին: Մտնում են խանութ, ձեռք-ձեռքի տըված կանգնում: Վաճառողուհին հարցնում է. «Ի՞նչ գիրք եք ուզում»: Սանասարը. «Երեխայի՛ն հարցրու»: Վաճառողուհին ինչ-որ մանկական պատկերազարդ գիրք է դնում Գագիկի առաջ, բայց գիրքը սրան դուր չի գալիս, որովհետև բարակ է լինում, թղթե կազմով: Այս բոլորը վաճառողուհիները հետո Ենոքին էին պատմել: Վաճառողուհու առաջարկած գրքերից ոչ մեկը Գագիկի սրտով չի լինում, ախր Սանասարի նման աժդահա քեռու համար է առնում, հետևաբար, պիտի կաշեկազմ ու պատկառազդու լինի: Գագիկը հենց այդպես էլ ասել է՝ հաստ ու կաշվե կազմով: Խե՛ղճ վաճառողուհի: «Այդ դեպքում սա վերցրու»,— առաջարկում է նա: Ենթադրում եմ, որ դա որևէ գեղարվեստական գիրք է եղել, որևէ հաստափոր վեպ: «Երեք ռուբլի արժի՞»,— հարցնում է Գագիկը: «Չէ. ավելի պակաս»,— ասում է վաճառողուհին: «Ես այնպիսի գիրք եմ ուզում, որ երեք ռուբլի արժենա»,— ասում է Գագիկը: Ենոքը պատմում էր, որ երեխան չի իմացել, որ դրամը կարելի է մանրել. երեք ռուբլի ունի, ուրեմն, միայն երեք ռուբլիանոց գիրք կարող է գընել: Երեխա է, չգիտի, զարմանալի ոչինչ չկա, բայց դու պատկերացրու, որ Սանասարն ամբողջ ժամանակ նրա կողքին է եղել: «Երեք ռուբլիանոց գիրք ես ուզու՞մ,— զարմանում է վաճառողուհին,— միևնույն է, թե ինչ գիրք կլինի՞»: «Չէ,— ասում է Գագիկը,— որ համ երեք ռուբլիանոց լինի, համ հաստ, համ էլ կաշվե կազմով»: Այդ ժամանակ մյուս վաճառողուհին, մի ջահել աղջիկ, միայն ջահելն այդպիսի կատակ կանի, վեր է կենում, վերին հեռավոր թարեքից կապույտ կազմով մի հաստ գիրք իջեցնում: «Սա իսկը քո ուզածն է,— ասում է,— հաստ է, կաշեկազմ և ուղիղ երեք ռուբլի արժե»: Ուրախացած Գագիկը փողը տալիս է, գիրքն ստանում և հանդիսավոր հանձնում Սանասարին: Ենոքն ասում էր, որ երբ ինքն իջել է, գիրքն արդեն գնած են եղել, շտապելուց չի նայել, թե ինչ գիրք է: Գագիկին տուն է ուղարկել, Սանասարին ուղեկցել ավտոկայան, և միայն հաջորդ օրը տարեց վաճառողուհուց, որի սիրտն այդպես էլ չի տարել երիտասարդ ընկերուհու կատակը, իմացել է, թե Սանասարն ինչ գիրք է նվեր ստացել:

Իսկ Սանասարը գյուղ է մտնում այդ գիրքը թևի տակ: Ինձ չի զարմացնում,



digitised by A.R.A.R.@

որ ճանապարհին ոչ մի անգամ գրքին չի նայել, չի կարդացել վերնագիրը: Ինձ զարմացնում է, որ գիրքը չի գցել թևի տակից, չի կորցրել: Եթե մտքով չի անցել գիրքը դնել ճամպրուկի մեջ, ուրեմն, գիրքը չի խանգարել նրան, չի զգացել, որ թևի տակ հաստ ու ծանր բան կա: Քննությունից կտրվելուց հետո ամբողջ ժամանակ կարծես երազի մեջ է եղել: Միևնույն ժամանակ իջել է իր երկինքներից, սկսել է զգալ իր վիճակի ողջ անհեթեթությունը: Եթե այդ մի քանի օրը նա իրեն խմելու տված լիներ, պատկերացրու, անուշադրության կմատնեին, նույնիսկ չէին նկատի: Ոմանք էլ կասեին, որ հասկանում են Սանասարին. տխուր է եղել, ինչ-որ բան է նրան պակասում: Կկարեկցեին: Իսկ Սանասարն զգացել է, որ իրեն ոչ ոք չի կարեկցելու, ոչ ոք չի փորձելու հասկանալ: Սանասարն ու՞ր, սովորելն ու՞ր, գիրն ու գիտությունը Սանասարի բանը չեն: Ճիշտ է, խմելն էլ Սանասարի բանը չէ, բայց հարբած Սանասարի թևերը կընկնեին, առոք-փառոք կդնեին անկողին, վերմակով էլ ուզածիդ պես կծածկեին, որ հանկարծ չմրսի, թաթերի վրա ման կգային, որ հանկարծ չարթնանա: Իսկ հիմա ամոթից գետինն էր մտնելու: Անխելք, անլուրջ, համընդհանուր ծիծաղի առարկա դարձած որդի, ամուսին ու հայր ունենք: Ինձ թվում է, որ Սանասարը, արդեն քիչ թե շատ իրականությանը վերադարձած, ոտքովգլխով այս տխուր հեռանկարին է անձնատուր եղել, մտածել է՝ սեփական ձեռքով ամեն ինչ արեց, որ իր կյանքը թունավորեն: Սա, մեկ էլ խորտակված անուրջները ժամանակ չեն տվել, որ





digitised by A.R.A.R.@

զգա՝ թևատակին գիրք ունի, որ նայի վերնագրին:

Իսկ գյուղում արդեն Սանասարին են սպասում: Մայրը կամ կինը երևի որպես գաղտնիք շշնջացել են մոտ հարևանուհու ականջին, և Սանասարի չարաբաստիկ ուսումնառության լուրը կայծակի արագությամբ տարածվել է գյուղով մեկ: Իրադրությունն այսպիսին է, և կարծես թե դա քիչ է, Սանասարն ավտոբուսից իջնում է՝ գիրքը թևի տակ և իջնելուն պես հանդիպում է համագյուղացիներից մեկին: Վերջինըս սայլով է լինում: Սանասարին կանչում, նստեցնում է իր կողքին և, մինչ եզները շորորալով քաշում են սայլը, միամիտ ձևանալով սկսում է հարցուփորձ անել: Պարզ է, Սանասարն այնքան անխելք չի, որ վայրահաչի ինքն իր վրա, և, թերևս, չլիներ այդ գիրքը, գուցե հնարավոր լիներ ամեն ինչ կոծկել: Բայց գիրքը թևատակին է, այնքան էլ մեծ ու շքեղ, որ իսկույն աչքի է զարնում: Սանասար, էդ ի՞նչ գիրք է թևիդ տակ: Չգիտեմ: Ո՞նց թե չգիտես, դպրոցում տառերը չե՞ն սովորեցրել: Սանասարը գիրքը հանում է թևատակից, ու երկուսով կարդում են վերնագիրը. «Ռուսական առաջադեմ միտքը 1861 թվականի գյուղացիական ռեֆորմի նախօրյակին»: Այս գիրքն իսկապես Սանասարի խելքի բանը չէր, և սկսվեց ու գնաց: Ինչե՞ր ասես, որ չէին հորինում քեռուդ վրա. Սանասարը հողային ռեֆորմ պիտի անի, գիրքն արդեն բերել է: Սանասար, էն ո՞ր թվին էր, որ ցարը քեզ կանչեց, թե արի խելք-խելքի տանք, տեսնենք էս գյուղացոց բանը ո՞նց է լինելու: Սանասար, հողը բաժանելիս, ինձ քաղցր աչքով նայիր, ուտող բերան շատ ունեմ: Սանասար, գնա գյուղսովետ, ակադեմիայից նամակ ունես: Լսե՞լ եք, ինստիտուտները փակում են, ասում են՝ Սանասարից հետո ուրիշ ուսանող չենք ուզում ունենալ: Ո՞ր մեկն ասեմ: Ի՞նչ անուն ասես, որ չկպցրին քեռուդ: Դրանցից մեկը կպավ ու մնաց՝ Ռեֆորմ: Ասենք, գիտես, հիմա նրանց ամեն ինչը Ռեֆորմով է սկսվում. Ռեֆորմենց տունը, Ռեֆորմենց կովը, Ռեֆորմենց հարսը...

Սա է ամբողջ պատմությունը: Չգիտեմ, գուցե քեզ թվաց, թե մեջը մի առանձին բան չկա: Գուցե և իրավացի ես, չեմ վիճում: Ասա, որ բոլորի մեջ էլ այդ ցավի սերմը կա, միայն թե նայած ում մեջ ինչպես է ծիլ տալիս, կհամաձայնեմ: Գիտեմ, թե ոնց է լինում, որ այդ անիծյալ կարոտն ու թախիծը լցնում են սիրտդ ու սկսում խեղդել: Մեկը թեթև է տանում, մյուսն այդ ցավը զգում է ամեն օր ու ամեն ժամ, բայց դիմանում է, երրորդն էլ գլուխը կորցնում, դուրս է գալիս իր միջից: Քեռիդ այդ երրորդն է: Գիտես, որ քեռուդ սիրում եմ, չսիրելու մարդ չի: Սիրում եմ և ափսոսում: Եվ գիտե՞ս ինչի համար: Ափսոսում եմ, որ մի անգամ այդպես ապստամբեց ինքն իր դեմ, հետո էլ այդպես խաղաղվեց: Հիմա, գնա հարցրու, երևի չհիշի էլ, թե ինչ էր մտել գլուխն այն տարի: Շատ-շատ պիտի ասի, որ ջահելություն է արել: Ինչու՞ եմ հեռու գնում. հիմա, երբ նայում ես քեռուդ, կարո՞ղ է մտքովդ անցնել, որ արածս պատմությունը նրա հետ է կապված: Երբեք: Երբ հիշեցնում են, այնպես է ժպտում, ասես դա իսկապես իր հետ



digitised by A.R.A.R.@

չի կատարվել: Քեռիդ դժգո՞հ է այսօր բախտից: Չէ: Համենայն դեպս, չի զգացվում: Իսկ քանի՞ տարի է անցել: Շատ չէ, ընդամենը տասը տարի: Այո, ափսոսում եմ, որ այն տարիների Սանասարը չկա, բայց եթե հարցնես՝ կուզենայի՞, որ հիմա էլ Սանասարը նման մի օյին խաղար մեր ու իր գլխին, կասեմ, որ չէ: Շատ բան կա աշխարհիս երեսին, միևնույն է, բոլորի ետևից չես հասնի, իսկ եթե գնացիր, ունեցածն էլ գուցե կորցնես: Մայրդ Սանասարի քույրն է: Կարծում ես, գո՞հ է իր կյանքից: Ի՞նչ է տեսել կամ ի՞նչ է տեսնում, որ գոհ լինի. մի գործը վերջացրու, որ մյուսն սկսես, մեջքդ մի ուղղիր, որ հասցնես: Բայց դեռ չեմ լսել, որ մայրդ տրտնջա: Թվում է, թե Սանասարի ու մորդ ճակատագրերը նման են. երկուսի կյանքն էլ գնացել է այն հունով, որով մի անգամ սկսել էր գնալ: Մայրդ երբեք չի փորձել փոխել իր կյանքը, Սանասարը փորձեց, բայց չփոխեց, ի՞նչ տարբերություն: Բայց չէ, մեծ տարբերություն կա. Սանասարը չի թռչում, որովհետև թևերը խուզված են, մայրդ ինքն է ծալել իր լայն թևերը: Խուզված թևերով Սանասարն այսօր գոհ է թե՛ իրենից, թե՛ աշխարհից, ուզում ես Սանասար ասա, ուզում ես՝ Ռեֆորմ, նույն բարի ժպիտն է խաղացնում դեմքին, մեկ-մեկ էլ նույնիսկ տրտնջում է՝ հենց այնպես, ձևի համար, շատ կուշտ, շատ փափուկ չերևալու ներքին պահանջից: Մայրդ իր լայն թևերը փռել է մեզ վրա, ոչ թե այն պատճառով, որ դա միակ երջանկությունն է կյանքում, այլ որովհետև մայրդ ավելի ուժեղ մարդ է, ավելի իսկական մարդ: Քեզ այսպես կասեմ՝ չթռչել էլ կա, չթռչել էլ. կա չկարողանալ, կա չուզենալ: Դու իմ որդին ես, քո լավն եմ ուզում, կարո՞ղ եմ ասել՝ մի՛ երազիր, մեծ բանի մի՛ ձգտիր, հանուն նպատակի ծալի՛ր թևերդ: Չե՛մ կարող: Դու իմ որդին ես, քո լավն եմ ուզում, կարո՞ղ եմ ասել՝ ոչ մի բանի մի՛ նայիր, ինչ սրտիդ տալիս է՝ ա՛յն էլ արա, քո նպատակը թող միայն թռիչքի մեջ լինի: Չե՛մ կարող: Ոչ էլ կարող եմ ասել՝ ինձնի՛ց օրինակ վերցրու, որովհետև, նախ ես մի մեծ բան չեմ, և հետո դու ինձ նման չես, ինձ չես քաշել: Քո մեջ ավելի շատ մորիցդ ու քեռուցդ կա: Եթե մորդ ես քաշել, ոչինչ, ինչ էլ որ դառնաս, գոնե կիմանամ, որ թևերդ չեն խուզել: Չեն խուզել ու չեն կարող: Թե չէ դու ինձ վախեցնում ես: Այսօր առավոտ թվաց, Սանասարի աչքերն են ինձ նայում: Տա աստված, որ ես սխալված լինեմ:



digitised by A.R.A.R.@

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*բանասիրության դոկտոր*

### 47. ՆՈՒՅՆԸ ՉԷ՞ ԱՐԴՅՈՔ՝ «ԵՍ ԾԻՐԱՆԻ ՄԻ ԾԱՌ ԵՄ» ԵՎ «ԵՍ ՄԻ ԾԱՌ ԵՄ ԾԻՐԱՆԻ», ԿԱՄ՝ ՇԱՐԱՀՅՈՒՍԱԿԱՆ ՈՃԱԲԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ:

Իսկապես՝ նույնը չէ՞ արդյոք, երկու նախադասությունն էլ արտահայտում են ճիշտ և ճիշտ նույն միտքը, միայն շարահյուսումն է մի քիչ տարբեր: Բանն էլ հենց այդ «մի քիչ» տարբեր լինելն է: Մի քիչ տարբերություն, և մի դեպքում՝ առաջինում, նախադասությունը հնչում է հասարակ, սովորական, մյուս դեպքում՝ «ավելի կենդանի ու երաժշտական», ինչպես նկատել է նշանավոր լեզվաբան Մանուկ Աբեղյանը, որի «Հայոց լեզվի տեսություն» գրքից է առնված օրինակը:

Վերը բերված օրինակում գործադրված ձևը կոչվում է շրջում, որով «բառերի սովորական շարադասությունը շուռ է գալիս»:

Զարմանալ կարելի է, թե ինչպես մի բառը մյուսից ետ կամ առաջ դնելու պատճառով խոսքը փոխում է իր գույնը, հուզական շունչը: Ահաածականի նախադաս և ետադաս գործածության օրինակներ՝ «Փայլում էր կապուտակ երկինքը» և «Փայլում էր երկինքը կապուտակ». երկրորդը հնչում է ավելի վերամբարձ, ավելի բանաստեղծական: Զուր չէ, որ ածականի այսօրինակ կիրառությունը բանաստեղծների նախասիրությունն է:

Կա ոճաբանական մի հնար էլ, որ կոչվում է աստիճանավորում, երբ միմյանց հաջորդում են ավելի ու ավելի ուժեղ բառեր ու դարձվածքներ: «Կշտամբեցին, ամոթանք տվին, թքեցին, մրեցին մեղավորին» նախադասության մեջ չի կարելի առաջին բառը ետ տանել, եթե չենք ուզում կորցնել խոսքի այն ուժը, որ աստիճանավորման հնարն է տալիս: Նույն ըսկըզբունքը ածականներ ընտրելիս է կիրառվում՝ ածականներից ամենաուժեղը վերջինը պետք է լինի. «Նա մի ընկերական, բարեսիրտ, հիանալի՛ մարդ էր»:

Եթե հիշում եք՝ մեր զրույցներից մեկում մենք խոսել ենք հոմանիշ բառերի ճիշտ ընտրության և այն մասին, որ ինչքան շատ հոմանիշներ իմանաք, այնքան մեծ կլինի ընտրություն կատարելու ձեր հնարավորությունը:

Այդ նույնը վերաբերում է շարահյուսությանը, քանի որ կան նաև շարահյուսական հոմանիշներ: «Մթնելուն պես անձրևը վրա տվեց», «Հենց որ մթնեց՝ անձրևը վրա տվեց», «Մթնեց թե չէ՝ անձրևը վրա տվեց»,— սրանք շարահյուսական հոմանիշներ են՝ երանգային նուրբ տարբերությամբ: Նույնը և՝ «Նպատակին հասնում է այն մարդը, որ համառ է ու հետևողական», «Համառ ու հետևողական մարդն է հասնում նպատակին»: Ո՞րը կնախընտ-

րեք. դա ձեր ճաշակը, խոսքի նպատակն ու բնույթը կորոշի։

Ընտրության մեջ գլխավոր դերը պատկանում է այն պարագային, թե ի՛նչ հանգամանքներում, ի՛նչ միջավայրում, ի՛նչ նպատակով, ի՛նչ վերաբերմունքով է ասվում կամ գրվում խոսքը։

Հայերենի շարահյուսության ոճական հնարավորությունները հարուստ են անսպառ լինելու չափ։ Մենք կարող ենք գոյականով նախադասություններ կազմել. «1942 թվական։ Ձմեռ է։ Բուք»։ Կարող ենք և անենթակա նախադասություններ կազմել. «Լուսացավ։ Անամպ երկինք»։ Կարող ենք վիրավորվել «մի բանի պատճառով», բայց նաև «մի բանի համար», պատմել «անցած-գնացած օրերից», բայց նաև «անցած-գնացած օրերի մասին», պատմել «անցած դեպքերը», բայց նաև «անցած դեպքերի մասին», հիանալ «արարքի վրա», բայց նաև «արարքով»։ Այս ամենի միջև կան նուրբ տարբերություններ կոնկրետ խոսքի մեջ։

Կարող ենք գրել. «Թանգարանը լի է բազմաթիվ արժեքներով՝ հնադարյան դրամներով, զարդերով, սափորներով», բայց կարող ենք և թեթևացնել ոճը. «Թանգարանը լի է բազմաթիվ արժեքներով՝ հնադարյան դրամներ, զարդեր, սափորներ»։ Տեղ կա, որ հարմար է թվարկել այսպես. «Պարտեզում ծաղիկներ շատ կան՝ վարդ, մեխակ, շուշան», տեղ էլ կա, որ պետք է լինում շեշտել. «...և՛ վարդ, և՛ մեխակ, և՛ շուշան»։ Տեղ կա, որ կարելի է այսպես մերժել. «Այս աթոռն ու սեղանը մեզ պետք չեն», տեղ էլ կա, որ ուզում ես անպայման շեշտել. «Մեզ ո՛չ այս սեղանն է պետք, ո՛չ էլ այս աթոռը»։ Երբեմն հարմար է ասել. «Սա է մեր հողը, այգին և տունը», երբեմն էլ՝ «Սա է մեր հողը, մեր այգին, մեր տունը»։

Ոճական հնարների միջոց է դառնում նախադասության որոշ անդամների տրոհումը։ «Մի մարդ մտամոլոր ու տխուր անցնում էր փողոցով» և «Փողոցով մի մարդ էր անցնում՝ մտամոլոր ու տխուր»,— միտքը նույնն է, ոճը՝ տարբեր, երկրորդն ավելի հուզական է։

Չկա խոսքի որևէ մաս, որ չունենա խոսքին ոճական գունավորում տալու հնարավորություն՝ բայից սկսած մինչև կապն ու շաղկապը։ Զննենք հայերենում այնքան գործածական որ շաղկապը։

Նախապես ասենք՝ որ-ը կարող է հանդես գալ և՛ իբրև դերանուն, և՛ իբրև շաղկապ։ «Այն մարդը, որը չունի կայուն սկզբունք, չի կարող վստահություն ներշնչել»,— այստեղ որ-ը դերանուն է և կատարում է միտքն ուժեղացնողի դեր, այլ շարահյուսությամբ միտքն այդքան շեշտված չի լինի։ Իբրև դերանուն որ-ը մի լավ հատկություն էլ ունի՝ ոճը թեթևացնում է, երբ իր վրա է առնում հոգնակի դերանվան դերը. «Վահեն, Հայկը, Նունեն, Դավիթը, որոնք աչքի են ընկնում օրինակելի վարքով...» նախադասության մեջ որոնք-ին շատ հանգիստ կարող է փոխարինել որ-ը՝ մեջտեղից հանելով երեք հնչյուն, և դա էլ ունի կարևորություն։ Տեղ էլ կա, ուր այդպիսի փոխարինումն ավելի կարևոր է. «Նրանք, որոնք երեկ չէին եկել, կարող



digitised by A.R.A.R.@

են այսօր գալ»: Նրանք, որոնք շատ է անբարեհնչուն, և որ-ը պատրաստ է օգնության հասնել: Այդ ամենահաս որ-ը մեզ պատրաստ է ծառայություն մատուցել խոսքին եռանդ հաղորդելու համար ևս՝ հենց որ, ոնց որ, քանի որ, թե որ, ինչքան որ, չէ որ, մանավանդ որ, ինչ-որ, որքան էլ որ, ինչ էլ որ...

Որ-ն էլ շաղկապ է, թե-ն էլ: Ի՞նչ տարբերություն եք նկատում «Ասաց, որ չի գա» և «Ասաց, թե չի գա» արտահայտությունների միջև: Ճիշտ կըլինի, եթե ասեք՝ առաջինն ավելի հաստատական է, քան երկրորդը: Զուր չէ, ենթադրական բառի հոմանիշը թեական է:

Ծարահյուսական միջոցներով մենք հուզական ուժ ենք տալիս մեր խոսքին. պայման ենք դնում՝ «Կասեմ, եթե շատ ես ուզում», «Թող լռի, թե չէ ես էլ իմը կասեմ». տրամադրվում ենք զիջելու՝ «Չնայած դրան՝ ես պատրաստ եմ համաձայնել», «Եթե նույնիսկ չհաջողվի, ես չեմ բողոքի», հուզմունք ենք արտահայտում՝ «Ընկերոջս շատ եմ կարոտել, շա՜տ», «Կգա՛, կգա՛, դու մի՛ վշտանա», «Չէ՛ որ չէ՛, ես այդ քայլին դիմողը չեմ»:

Լեզուն, խոսքը քերականորեն կարող է միանգամայն ճիշտ լինել, բայց ոճականորեն՝ անգույն ու տխուր: Ուրեմըն պետք է կարողանալ այնպես շարահյուսել բառերը, այնպես համադրել ու ներդաշնակել, որ բառերն իրենց լավ զգան, ժպտան ու ճառագեն՝ հանդես բերեն իրենց բույրն ու հրապույրը, խոսքը դարձնեն վառ ու տպավորիչ:



Երկրորդ դասարանցի Նաստյան, դպրոցի միջանցքում իր մի խումբ դասընկերուհիների հետ կանգնած, ինչ-որ բան էր պատմում: Ձեռքերը գրպաններն դրած, նրանց մոտով անցավ մի փարթամ հինգերորդ դասարանցի:

— Բարև,— ասաց Նաստյան,— մենք՝ ես և դուք շախմատի միևնույն խմբակում ենք պարապում:

— Փախի՛, ծիպու՛կ,— հինգերորդ դասարանցին նրա վրա չնայեց էլ:

Երեկոյան պիոներտանը հինգերորդ դասարանցու հետ Նաստյան նստեց շախմատի տախտակի առաջ: Հինգերորդ դասարանցին սկզբում անփույթ հրեց քարերը, հետո սկսեց մտածել, հետո սկսեց փնչալ-տնքալ և հինգ րոպե անց հանձնվեց:

Հետևյալ օրը Նաստյան դասամիջոցին ընկերուհիներին պատմում էր, թե հինգերորդ դասարանցուն ինչպես տարավ: Մեկ էլ լսեց հարգալից մի ձայն.

— Բարև՛, դուք ինձ չճանաչեցի՞ք, մենք շախմատի նույն խմբակում ենք պարապում:

Եվ բոլորը ծիծաղեցին:

*ՆԱՏԱՇԱ ՆՈՎԻԿՈՎԱ*
*Լենինգրադ, № 171 դպր.*
*3-րդ դաս.*




digitised by A.R.A.R.@

## ՀԱՅՐՍ ԾԱՆՐ ՄԱՆԿՈՒԹՅՈՒՆ Է ՈՒՆԵՑԵԼ

Ես շատ եմ սիրում իմ հայրիկին և շատ եմ խղճում նրան, որ նրա մանկությունը չի եղել այնպիսին, ինչպիսին մերն է: Տատիկս ունեցել է շատ երեխաներ, բայց նրանցից մնացել են միայն երկուսը՝ հայրիկս և մեծ հորեղբայրս: Հայրիկս ընտանիքին օգնելու համար ստիպված 7-րդ դասարանից թողել է դպրոցը: Նա ուզում է, որ ես այս լավ պայմաններում լավ սովորեմ: Դըպրոցը ավարտելուց հետո որոշել եմ ուսումս շարունակել օդաչուական դըպրոցում, խորհրդակցել եմ հայրիկիս հետ: Նա այժըմվանից ուշադրություն է դարձնում իմ ֆիզիկական պատրաստականության վրա, սովորեցնում է տարբեր աշխատանքներ կատարել, թե՛ հեշտ և թե՛ դժվար: Օդաչուական դպրոցում մեծ ուշադրություն են դարձնում ռադիոտեխնիկական գիտելիքների վրա և դրա համար հայրիկս միջոցներ է ներդնում և ինձ օգնում է սովորելու նաև այդ մասնագիտությունը: Մեր ընտանիքը համերաշխ է, և դա կախված է լինում մեծ մասամբ հայրիկից: Պատահում է, որ ես ու մայրիկը վիճում ենք, այդ ժամանակ հայրիկս միջամըտում է, հաշտեցնում մեզ: Ասեմ նաև, որ իմ հայրիկն աշխատում է էլեկտրաապարատների գործարանում որպես բանվոր և ունի շատ լավ ընկերներ:

## Ի՞ՆՉՆ Է ՊԱՏՃԱՌԸ

Իմ հայրիկը շատ խիստ է և զայրացկոտ: Նա մեր նկատմամբ հոգատար է: Երբեմն լինում է, որ ես ատելությամբ եմ լցվում նրա հանդեպ, երբեմն էլ՝ սիրով: Ատելությամբ եմ լցվում այն ժամանակ, երբ մայրիկիս անտեղի կոպտում է, վիրավորում է ում մոտ որ պատահի: Նույնը մեզ հետ է՝ զայրացած ժամանակ, կոպտում է մեզ, գոռում: Սիրով եմ լցվում հայրիկի նկատմամբ, երբ տուն է գալիս ուրախ, կատակում բոլորիս հետ, խաղաղ զրուցում, սիրով է խոսում մայրիկի հետ: Հայրս միշտ օգնում է նրանց, ովքեր օգնության կարիք են զգում: Այդպիսի բնավորություն ունեմ նաև ես: Հայրս մեզ թույլ չի տալիս կինո կամ զբոսնելու գնալ, որովհետև մեզ կարծես թե չի վստահում և այդ բանը մեզ վիրավորում է: Ահա մի օրինակ: Երբ ես ու մեծ քույրս գնացել էինք մեր ամենամոտ ընկերուհու ծնունդը շնորհավորելու (նա ապրում է մեր շենքում) դեռ նոր էինք հասել, երբ նա զանգահարեց, մեզ կանչեց, ասաց. արդեն ուշ է, բավական է, ինչքան մնացիք: Բայց դեռ ժա-

# «ԻՄ

**Երևանի № 46 դպրոցի**





digitised by A.R.A.R.@

# ՀԱՅՐԻԿԸ»

է սուտը, այդ պատճառով նա մեկ-երկու անգամ ծեծել է եղբորս՝ սուտ խոսելու համար:

աշակերտների շարադրություններից

մը 10-ը չկար: Մենք անհարմար էինք զգում, որ վեր կենայինք գնայինք, որովհետև այդ աղջկա հետ այնքան մոտ ենք. մեր քույրերից չենք տարբերում:

Ես զայրանում եմ, հոգեպես տանջվում, որ իմ մայրը կամ հայրը մեզ չեն հասկանում: Երբ նայում եմ ուրիշ ծնողների, որոնք իրենց երեխաների հետ բաժանում են մրտքեր ու զգացումներ, նախանձով եմ լցվում նրբանց հանդեպ: Ես փորձել եմ այդպես լինել մորս կամ ծայրահեղ դեպքում հորս հետ, բայց չի հաջողվել:

## ՆԱ ԱՏՈՒՄ Է ՍՈՒՏԸ

Իմ հայրիկը շատ խըստապահանջ է: Ես այնքան էլ լավ չեմ սովորում, և այդ պատճառով նա միշտ ջղայնանում է ինձ վրա: Իմ հայրիկը մի օր աշխատում է, իսկ մյուս օրը՝ հանգստանում: Իմ մայրիկը չի աշխատում, նա զբաղվում է տնային գործերով: Մեր դպրոցով ու ծնողական ժողովներով հետաքըրքըրվում է հայրիկս: Մեր տանը 3 սովորող կա: Հայրիկս չի հասցնում պետք եղածին պես բոլորովս հետաքըրքրվել: Նա ավելի շատ ուշադրություն է դարձնում եղբորս վրա, որը սովորում է ուսումնարանում: Հայրս միշտ ատել

## ՆԱ ԼԱՎ ԸՆԿԵՐ Է

Իմ հայրիկը աշխատում է №1 տաքսամոտորային պարկում որպես վարորդ: Առավոտյան շուտ գնում է աշխատանքի և վերադառնում է երեկոյան՝ հոգնած և մի տեսակ տանջված: Հեշտ չէ ողջ օրը աշխատել տարբեր բնավորությունների տեր մարդկանց հետ: Հանգըստյան օրերին հայրիկս պատմում է իր աշխատանքի, և հանդիպած լավ ու վատ մարդկանց մասին: Նա միշտ ջանում է ինձ տալ մտերիմ խորհուրդներ: Ես շատ ուրախ եմ, որ ունեմ այդպիսի հոգատար հայրիկ: Իմ հայրիկը հոգատար է ոչ միայն իմ նկատմամբ, այլև ամբողջ ընտանիքի: Նա հաճախ է մեզ տանում թատրոն կամ որևէ ֆիլմ դիտելու: Նա միշտ լինում է մտերիմ ու լավ ընկեր և ցանկանում է, որ ոչ մի վատ բան չլինի մեր ընտանիքում: Նա միշտ օգնում է մայրիկիս՝ որքան որ հնարավոր է: Նրա հետ միշտ ուրախ է և հաճելի:





digitised by A.R.A.R.@

# Էլլադա Չախոյան

## ՍԵՐ ԵՎ ԱՇԽԱՏԱՆՔ

Սիրելի պատանիներ, ուրախ եմ, որ առիթ ունեմ «Պիոներ» ամսագրի էջերից ողջունելու ձեզ, լինելու այսօր ձեր հյուրը: Ես հաճախակի ելույթներ եմ ունենում «Դպրոցականի ֆիլհարմոնիայում» և ինձ համար հաճելի է տեսնել, որ ձեր մեջ դասական երաժշտություն սիրողների թիվը օրեցօր ավելանում է:

Ես ինքս էլ հենց դպրոցական տարիներից նվիրվել եմ արվեստին: Գերազանց գնահատականներով ավարտեցի Չայկովսկու անվան երաժշտական դպրոցի դաշնամուրի դասարանը, ապա ավարտեցի Երևանի Կոմիտասի անվան պետական կոնսերվատորիայի դաշնամուրային և վոկալ բաժինները և նույն՝ 1972 թվականին էլ իբրև մեներգչուհի հրավիրվեցի Երևանի Սպենդիարյանի անվան ակադեմիական օպերայի և բալետի թատրոն, ուր մինչև այժմ աշխատում եմ:

1972 թվականին Անդրկովկասյան երիտասարդ կատարողների մրցույթում գրավեցի առաջին տեղը: Դա իմ առաջին մեծ հաջողությունըն էր: Այդ հաջողությունը կրկնվեց նաև 1973 թվականին՝ Գլինկայի անվան համամիութենական մրցույթում:

1977—78 թթ. ինձ բախտ վիճակվեց կատարելագործվել աշխարհի լավագույն օպերային արվեստի տաճարում, Միլանի «Լա սկալա» օպերային թատրոնում, լավագույն մաեստրոների մոտ:

Վերջերս, 1981 թ. ապրիլին, Հունաստանում, մեծանուն երգչուհի Մարիա Կալլասի անվան համաշխարհային մրցույթում ստացա արծաթե մեդալ:

Իմ համերգային գործունեության սահմանները ընդարձակ են: Հաճախակի ելույթներ եմ ունենում ռադիոյով և հեռուստատեսությամբ, համերգներ եմ տալիս մեր հանրապետության և Միության տարբեր քաղաքներում, ինչպես նաև արտասահմանում: Երգել եմ Իտալիայում, Չեխոսլովակիայում, Լեհաստանում, Ֆրանսիայում, Իսպանիայում, Հունաստանում, Միացյալ Նահանգներում և այլուր: Տիրապետում եմ տարբեր լեզուների և դա ինձ հնարավորություն է տալիս երգել այն լեզվով, ինչ լեզվով որ երգն է գրված:

Իմ առջև ճանապարհ է բացում, իմ կարծիքով, իմ մասնագիտության նկատմամբ ունեցած անսահման սերը և այն, որ իմ արվեստում կատարելագործվելու համար ջանք ու աշխատանք չեմ խնայում:

Ես երջանիկ եմ, որ իմ արվեստով կարողանում եմ ծառայել մարդկանց:



digitised by A.R.A.R.@

ՆՈՒՐԱՏԴԻՆ ՅՈՒՍՈՒՊՈՎ

Ս. Ստալինի անվան
մրցանակի դափնեկիր
(Դաղստան)

# ԱՀՄԵԴՆ ՈՒ ԻՐ ՆԿԱՐԸ

Այնպես եղավ, որ մի անգամ
Դասամիջոցին
Ահմեդը մի քսակ գտավ,
Դրամ կար միջին:

Քսակն առավ ու շտապեց
Պիոներսենյակ,
Ջոկատավարն այնպե՜ս հուզվեց՝
Արտասվելու չափ:

Առավոտյան պատի թերթում
Ահմեդը տեսավ
Իր նկարը ու տակին էլ
Խոսքեր այս տեսակ.

«Մեր պիոներ Ահմեդն է սա,
Ազնիվ և ուշիմ,
Գտել է ու ետ է տվել
Քսակն ուրիշի» :

Առաջինցի մի աղջնակ
Ահմեդին կանչում,
Մի անկյուն է տանում ու տես
Ի՜նչ է շշնջում.

— Այբբենարանս եմ կորցրել,
Ա՜խ, ներիր ինձ դու,
Գիրքը ինձ շատ է հարկավոր
Խնդրում եմ ե՛տ տուր:

Դասն ավարտվեց, երեխեքը
Շտապում են տուն,
Սպասում է դարպասի մոտ
Մի տատիկ տրտում:

— Ձեզնից ո՞ր մեկն է Ահմեդը,
Խնդրում եմ, որդյա՛կ,
Կափարիչն է կժիս կորել,
Չե՞ս կարող ետ տալ:

Խոր գիշեր է, ինչ-որ մեկը
Տան դուռն է ծեծում.
—Շտապ Ահմեդն է հարկավոր,
Օգնի մի գործում:

Էշս է կորել ու չեմ գտնում,
Շատ եմ անհանգիստ,
Դե, արթնացի՛ր, ե՜տ տուր էշս
Ու քնի՛ր հանգիստ:

... Եվ Ահմեդը առավոտ վաղ
Դպրոց շտապեց,
Իր նկարը հանեց պատից
Ու... պատառոտեց:




Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ



digitised by A.R.A.R.@

# ԵՐԿՈՒ ՏՂԱ




Աքլորացել, կռվում էին
Երկու տղաներ,
Ես մոտեցա ու փորձեցի
Նրանց բաժանել:
Ու երբ արդեն խաղաղվեցին,
Հարցրի նրանց.
— Ինչու՞ էիք կռիվ անում...—
Եվ մեկն ինձ ասաց.
— Ես չգիտեմ, ի՞նչ իմանամ,
Հարցրեք նրան:—
Մյուսն էլ նույն բանն է ասում՝
Հարցրեք նրան:
Հանդիպեցի մի օր այգում
Երկու պատանու,
Մեկը լուռ էր, իսկ մյուսն էլ
Ծպտուն չէր հանում:
— Ո՞վ է այգին ջրել,— ասի,—
Ո՞վ է խնամել:—
Մեկը լուռ էր, իսկ մյուսն էլ
Լուռ էր առավել:
Եվ մեկն ասաց.— Ես այդ մասին
Դեռ չեմ մտածել,
Հարցրեք նրան, այդ բաները
Նա՛ գիտի գուցե:—
Մյուսն էլ նույն բանն է ասում,
Շփոթվում կարգին,
Եվ իրար պես նրանք էլի
Լռում են կրկին:
Տանկը թողած բոցերի մեջ,
Իրենք վիրավոր,
Քայլում էին իրար հենված
Երկու քաջ զինվոր:
Քայլում էին, քայլում էին,
Ու չէին ընկնում,
Հույսեր էին տալիս իրար
Ու իրար օգնում:
Եվ սահմանում նրանց անհա
Հարցեր տվեցին.
— Ինչպե՞ս ելաք կրակներից,
Ինչպե՞ս փրկվեցիք:
Երևի թե եղբայրներ եք
Կամ հարազատներ,
Որ անձնազոհ կարողացաք
Իրար ազատել:
— Ի՞նչ իմանամ,— ասաց մեկը,—
Հարցրեք նրան:—
Մյուսն էլ նույն բանն է ասում՝
Հարցրեք նրան:

Գարնանային մի երեկո,
Առվի մոտ զույգ,
Նստել էին երկու ծեր մարդ,
Երկու սիրված այր,
Իսկ առվ..ում տոն էր այդօր,
Պարում են, երգում,
Հաղթանակի ցնծություն էր
Լեռնոտ այդ երկրում:
— Դե՛, պարի՛ մեջ մտեք, հայրե՛ր,
Պարե՛լ հաղթական,
Ձեր կրծքերի մեդալները
Ուրախ թող զնգան:
Իսկ, ա՛յ, այստեղ, երկու տղա
Դնգսում են իրար,
Եվ ծերերը մոտենալով
Հարցրին նրանց.
— Ինչու՞ համար, ի՞նչ է եղել...
— Հարցրեք նրան...
Մյուսն էլ նույն բանն է ասում՝
Հարցրեք նրան...
Ինչի՞ համար, ի՞նչ էր եղել,
Չգիտեն, ավա՜ղ,
Եվ շփոթվել կանգնել էին
Գլուխները կախ...

*Թարգմ. Մ. ՌՈՍԿԱՆՅԱՆԻ*



digitised by A.R.A.R.@

# Ես հավարած եմ

ԱՇԽԵՆ ԱԲԱՋՅԱՆ

## 4.

Վարիչ Աղասին հերթական այցելությունը կատարեց: Նախ ձվերը տեղավորեց քթոցների մեջ, հետո կերը թափեցին «Բելոռուսի» թափքից, հետո քթոցները դրեցին իրենց տեղը, իսկ վերջում, երբ տրակտորը շրջվել, սպասում էր Աղասուն, որ շարժվի, Նոյի տարվա մի հրացան մեկնեց Մնացին ու խիստ-խիստ ասաց.

— Ուրուրների հարցը լուծվեց: Էս՝ դուք, էս՝ հրացանը: Ամեն մեկդ երկու աչք ունեք, նշան բռնեք ու կրակեք: Փամփուշտներ ինչքան ուզեք բերել եմ, էլի կբերեմ: Էլ դժգոհություն չլսեմ: Վե՛րջ: Ես գնացի,— վրա տվեց մեր զարմացած հայացքների տակ, ապա թռավ տրակտորի խցիկն ու հեռացավ: Երբ «Բելոռուսի» դռռոցը մարեց հեռվում, ուշքի եկանք: Մնացը հրացանին նայեց, մատներով շոշափեց, որ հավատա նրա իսկությանը, Սաթոն ծղրտաց.

— Դե՛ն գցիր, դա՛ էր պակաս:

Վարսենիկը միացավ նրան, իսկ Մնացը խեղճ-խեղճ նայեց երկուսին էլ, հետո նորից հրացանին, հետո «հը՛մ» արեց, ասաց.

— Բան չեմ հասկանում:

— Դու բանը օրումեջ ես հասկանում,— քթմնչաց Սաթոն,— վաղը կհասկանաս:

— Արու՛ս ջան, բայքի դու բացատրես, թե էս հրացանը Աղասին ինչի՞ ձեռս տվեց:

— Մնա՛ց քեռի, ուրուրներին սպանելու համար:

— Ծա՛շ էր շան տղեն... Կյանքիս մեջ առաջին անգամ եմ հրացան առնում ձեռքս, ես ո՞ր օրվա հավք սպանող եմ:

— Դու չես սպանի, Սաթոն կսպանի կամ ես,— Վարսենիկը կատակի տվեց:

Ես հերթով նայեցի նրանց, ամեն մեկին պատկերացրի թաքստոցում պառկած, հրացանը նշան բռնած ուրուրին: Որպեսզի նրանք չզգան, որ ծիծաղում եմ, մի քար վերցրի ու շպրտեցի հենց այնպես, հետո վազեցի դեպի ժայռը, դեպի Մնացի ոչխարների քարայրը: Ծիծաղում եմ, ո՜նց եմ ծիծաղում: Փորս բռնած գալարվում եմ: Դեղնուկը զարմացած նայում է ինձ ու խենթի տեղ դնում: Աչքերիցս արցունքներ են հոսում:

— Դեղնու՛կ,— մի քիչ հանդարտվելուց հետո դիմում եմ շփոթված շանը,— իմ ընկերները այսօրվանից նաև որսորդներ են: Զգուշացի՛ր, կարող են փորձի համար քեզ վրա կրակել, մեծ մարդիկ են, նրանց աչքերը լավ չեն ջոկում առարկաները, շուն ու բազե կխառնեն:

— Արու՛ս,— Մնացը ձայն է տալիս:

Աչքերս սրբում եմ, ծիծաղս զսպում ու վազում նրանց մոտ:

— Արու՛ս ջան, ինչքան մտածում ենք, տեսնում ենք, որ մեր մեջի տղամարդը դու ես: Էս հրացանը քեզ է սազում, վերցրո՛ւ, հետը լեզու գտիր: Զգո՛ւյշ եղիր, բան-ման չպատահի:

— Ո՞նց թե, Մնա՛ց քեռի:



digitised by A.R.A.R.@

— Հա՛, հա՛, բալա՛, դպրոցում սովորած կլինես:

Դպրոցում ռազմագիտության դասերին մեր ուսուցիչ Սարուխան Մելքոնյանը մեզ մի հին ավտոմատի և մի քրքրված հակագազի վրա էր երեք տարի բացատրում ռազմական զենքերի ու ժամանակակից տեխնիկայի գաղտնիքները: Տասներորդում տղաները ըմբոստացան, թե՝ վաղը, մյուս օրը բանակ ենք գնալու, հրացան բռնել չգիտենք:

Ընկեր Մելքոնյանը ստիպված գնաց ԴՕՍԱԱՖ-ից մի «Տիր» հրացան խնդրեց, նրա վրա բացատրեց: Գարնան բացվելու հետ, մեզ առաջն արած, տարավ դաշտերը, ասաց՝ կրակել եմ սովորեցնում:

— Նայեցեք փողի վրայի բլթակի՛ն,— սկսեց բացատրել,— ձախ աչքը փակում եք, աջով բլթակն ու օբյեկտը մի կետի վրա կանգնեցնում, հետո ձգանը քաշում: Հրացանի կոթը պահում եք, ա՛յ այսպես: Հրացանը ետհարված ունի, որը նույնպես վտանգավոր է, եթե օգտագործելու կանոնները չպահպանեք:

Հետո մեկ-մեկ փորձեցինք: Կարծեմ ոչ մեկիս կրակածը թիրախին չկպավ: Բայց բավարարվեցինք այնքանով, որ հրացան ենք վերցրել, կրակել:

Հիմա ափսոսում եմ, որ լավ նշան բռնել չսովորեցի, հետո վախենում եմ այս հրացանից, մի տեսակ սարսուռ եմ զգում:

— Վերցրու՛, ինչ ուզում ես՝ արա՛, տերը դու ես,— Մնացը հանդիսավոր կերպով ինձ է հանձնում հրացանը:

— Որտե՞ղ պահեմ:

— Որտեղ քեֆդ տալիս է, միայն մեր աչքից հեռացրու::

Փամփուշտներն ու հրացանը վերցնում եմ, շարժվում դեպի ժայռերը:

— Է՛հ, Դեղնու՛կ, որսորդ էլ դարձանք,— ասում եմ անբաժան ուղեկցիս,— հիմա ուրուրները մեզանից կվախենան, աղվեսներն ու գայլերն էլ: Հիմա ավելի բարդ խնդիրներ ենք լուծելու: Քե՛զ տեսնեմ, Դեղնու՛կ, դու ավելի օգտակար գործ ես անելու՝ սպանվածներին պետք է հայտնաբերես: Ծիծաղու՞մ ես ինձ վրա... Քուսակին կընստեմ, հրացանը ուսս կգցեմ, փամփուշտակալը գոտիիցս կկապեմ ու ճամփա կընկնեմ:

Նորից պատկերացնում եմ մեր քարավանը, իմ ընկերներին: Այսինքն այս չորսին, էշեր հեծած, հրացաններով, թրերով, մեծ ճանապարհներին հերոսական ճակատամարտեր տալիս: Պատկերացնում եմ ու նորից քրքիջով լցնում ժայռերի խոռոչները:

Զարմանալի ձմեռ է: Հունվարը վերջանում է, բայց դեռ մի կարգին ձյուն չի տեղացել: Մի երկու անգամ մի երկու փաթիլ է գետնին ընկել ու դրանով հունվարը ավարտել է իր անելիքը, իրավունքները հանձնել փետրվարին: Ձյուն չի եկել, բայց ցուրտը զոռում է: Գիշերը գետինը սառչում է, աշխատանքի գնալիս քամի ենք կուլ տալիս: Կանայք բերանները գլխաշորի տուտով փակում են, փալաններին կպչում և մինչև թոնրանոց համարյա չեն խոսում: Ես բերանս չեմ փակում, սակայն տրամադրություն չեմ ունենում խոսելու: Մտքերիս հետ, քուռակի կողերին հարվածում եմ ու մեր փոքրաթիվ քարավանը ետևիցս տանում: Մնացը այլևս չի տրտնջում գիշերվա երկարելուց, որովհետև մի անգամ վարիչի մոտ խոսք է բացել տղամարդ ընկեր տալու համար, վարիչը խստորեն պատասխանել է՝ եթե չես ուզում, կարող ես չգալ, խնդրողները շատ են: Իսկ Մնացին բոլորովին ձեռնտու չէ չգալը:



digitised by A.R.A.R.@


Նկ. ՌԱՖԱՅԵԼ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

— Էս ձյուն-ձմռանը էսքան անասունը ու՞ր տանեմ, ինչո՞վ պահեմ,— վարիչի գնալուց հետո կանանց մոտ բացվեց: Ես էլ հանգստացա, համոզվեցի, որ հիմնական աշխատող եմ:

Ուրուրները ուրիշ տեղ սնունդ չգտնելով, ագռավների հետ խոսքը մեկ արած ամբողջ օրը պտտվում են հավերի գլխավերևը: Հավերը մրսում են, թառից համարյա չեն իջնում, միայն ջուր խմելու են դուրս գալիս: Այնպես որ ուրուրների հոգսից թեթևացել ենք: Բայց աներես հավեր կան, որոնք գլուխները կախ առվի եզերքով հա գնում են, մոլորվում չորացած մոշկուտներում: Եվ աներես ուրուրներ կան, որոնք նման հիմար հավերին են որոնում ու իրենց սրատես աչքերով անմիջապես նկատում: Դարձյալ զոհեր ենք ունենում, բայց ոչ ամեն օր: Մնացը ինձ մի գլուխ նախատում է, որ հրացանը գործի չեմ դնում:

— Ա՛յ բալա, հո ձևի համար չե՞ն բերել, —ասում է,— մեկ-մեկ տրաքացրու, բալքի էդ անտերները վախենան:

Որոշեցի մեկ-մեկ տրաքացնել: Արդյունքը հիանալի էր: Ամեն տրաքոցից փախչում էին: Հրացանի փողն ուղղում էի դեպի ժայռը, որտեղ ուրուրներն են նստած, աչքերս փակում ու առանց նշանառության ձգանը քաշում:

Մի առավոտ Մնացը թե.

— Գիշերը աղվեսներ էին եկել: Հավանոցի տեղը որ սովորեցին, կորանք: Մի բան պետք է մտածենք:

— Հրացանը քեզ տամ, Մնա՛ց քեռի:

— Որ տվեցիր, ի՞նչ պետք է անեմ:

— Կրակի՛ր:

— Մնացը իսկի ցերեկով շունն ու գելը իրարից չի ջոկում, գիշերը իգի՞թ է դառնալու,— ծաղրեց Սաթոն:

— Ի՞նչ կարևոր է տեսնելը: Առանց



digitised by A.R.A.R.@

նշան բռնելու՝ հրացանի ձգանը քաշիր ու վերջ, ինչ որ ես եմ անում:

— Դու ի՞նչ ես անում:

Ճիշտ ու ճիշտ, ինչ որ անում եմ, ասացի:

— Ես էլ զարմանում եմ, թե ուրուրները խի՞ չեն պակասում,— մանրիկ աչքերը վրաս ոլորեց,— ուրեմն մեզ խաբո՞ւմ ես: Լավ չի բալա՛, բոլորովին լավ չի: Որ մեկին սպանված տեսնեն, մյուսները չեն մոտենա:

Ես գլուխս կախեցի: Չէ՛, այսուհետև բաց աչքերով կկրակեմ:

Եվ կրակեցի: Ուրուրները նորից էին հավաքվել ժայռի գլխին: Կամաց, համարյա սողալով մոտեցա, հրացանը հարմարեցրի մի քարի, ես քարի ետևում չոքեցի: Նշանառությունը ճիշտ էր, բայց հենց ուզում էի ձգանը քաշել, ձեռքս դողում էր: Չգիտեմ հարյուր թե հազար անգամ փորձեցի, մինչև դողս անցավ և ձգանը քաշեցի: Ուրուրները միասին թռան, իսկ քիչ հետո մեկը խմբից անջատվեց ու ինձանից տասը քայլ հեռու թրմփաց գետնին: Դեղնուկը հասավ, հոտոտեց մի ոտքի վրա ցատկոտող թռչունին, իսկ ես բարձրացրի: Մի թևն ու մի ոտքը կոտրվել էին, կոտորակը մտել էր նաև մյուս թևի մեջ: Առողջ ոտքի ճանկերը ուզում էր ձեռքիս մեջ խրել: Ոտքը բռնեցի, փորձեց կտցահարել:

Ուրուրին կացարան տարա: Կանայք ներսում էին, Մնացը գյուղ էր գնացել: Անխոս նրանց մեկնեցի:

— Մեր թշնամուն մեր ձեռքը տվեցի՞ր,— Սաթոն վերցրեց իմ առաջին որսը,— հողե՛մ սրա գլուխը, քանիսի՛ գլուխը կերավ:

Վարսենիկն իր հերթին շուռումուռ տվեց, իր հերթին անիծեց, բայց երբ կախ ընկած թևն ու փշրված ոտքը շոշափեց, խղճահարությամբ ասաց.

— Մեղք է, կենդանի շունչ է, ապրել է ուզում, քա ի՞նչ անի:

Ես ինձ մեղավոր զգացի, վերցրի վիրավոր ուրուրին ու դուրս եկա: Նայում էի աչքերին, կարծես ասում էին՝ մենք ընկնվել չգիտենք, մենք լեռների հպարտ որդին ենք, մեռնելիս էլ հպարտ ենք մեռնում:

Գցեցի հավերի մեջ, ծղրտալով փախան:

Ո՞ւր եք փախչում, վախկոտնե՛ր, դուք հինգ հազար եք, սա՝ մեկը, այն էլ վիրավոր:

Մնացը թռչնանոցի բակը մտավ, դեռ էշից չէր իջել, կանայք աչքալուսանք տվին, ցույց տալով վիրավոր ուրուրը:

— Վա՛յ, ես քո արևի՛ն մեռնեմ, Արուսյա՛կ աղջիկ, որ ասում եմ՝ մեր մեջի տղամարդը դու ես...— նայեց ուրուրին ու մի լավ հայհոյեց նրանց յոթ պորտը:

Մնացը ինձ գովում էր, ես ուրախանալու փոխարեն տխրում էի: Հետո նրանք կացարան մտան, ես ուրուրին վերցրի, Դեղնուկի հետ հեռացանք, քայլեցինք դեպի հեռու ժայռերը: Ուրուրի աչքերը խամրում էին, խամրում էր աչքերի հպարտությունը: Ուրուրին դրեցի ամենաբարձր ժայռին և առանց ետ նայելու վերադարձա՝ սրտիս մեջ ծանրություն: Ժայռերի վրա է ապրել, թող ժայռերի վրա մահանա:

**(Շարունակելի)**





digitised by A.R.A.R.@



## ԻՄ ՊԱՏԿԵՐԱՍՐԱՀԸ



# ՀԱԿՈԲ ԳՅՈՒՐՋՅԱՆ



Ականավոր քանդակագործ Հակոբ Գյուրջյանը ծնվել է Լեռնային Ղարաբաղում 1881 թվի դեկտեմբերի 5-ին: Ժյուլենի ակադեմիայի շրջանավարտ, դիմանկարիչ Ստեփան Աղաջանյանը, երբ Փարիզից իր ծննդավայրը՝ Ղարաբաղ է վերադառնում, նրա խորհրդով Հակոբը սկսում է ուղիներ փնտրել դեպի մեծ արվեստ: Արդեն 27 տարեկան՝ մեկնում է Փարիզ և ընդունվում նույն ակադեմիան, որն ավարտել էր իր հայրենակիցը՝ Ստեփան Աղաջանյանը: Այնտեղ ուսանելու տարիներին Հակոբ Գյուրջյանը ակնառու առաջադիմություն է ցուցաբերում: 1911-ին Ալեքսանդր Շիրվանզադեն հանդես գալով «Հորիզոն» պարբերականում, նրա մասին գրում է. «Ընդամենը երեք տարի է, որ այս երիտասարդը ուսանում է Ժյուլենի ակադեմիայում և արդեն ցույց է տալիս տաղանդի ապացույցներ: Երեք տարի շարունակ հայ երիտասարդը ստանում է հիշյալ ակադեմիայում առաջին մրցանակներ ու շքանշաններ և միշտ ընթանում է հարյուրավոր աշակերտների մեջ իբրև առաջինը: Այս տարի պարոն Գյուրջյանը Մեծ-Պալեի սալոնին ուղարկեց պղնձյա արձանիկներ և երեքն էլ ընդունվեցին. մի բան, որ հազիվ է պատահում...»

Հակոբ Գյուրջյանը միաժամանակ դառնում է նաև դարի մեծագույն քանդակագործ Օգյուստ Ռոդենի երիտասարդ ընկերն ու բարեկամը, որի հզոր արվեստի բարերար ազդեցությունը չի խանգարում Գյուրջյանի ինքնատիպության ու ազգային բնույթին: Կարճ ժամանակամիջոցում նա ճանաչում է գտնում Փարիզում և Եվրոպայում: 1912 թ. Հակոբ Գյուրջյանի արվեստանոցն է այցելում Վլադիմիր Իլյիչ Լենինը: Գուցե պրոլետարիատի մեծ ա-



digitised by A.R.A.R.@

ռաջնորդի խորհրդով է նա 1912—1913 թ թ. կերտել դաշնակահար Ի. Դոբրովեյնի դիմաքանդակը, մի երաժիշտ, որի կատարումով Լենինը այնքան սիրում էր լսել Բեթհովենի «Ապասիոնատը»:

Ահա դաշնակահար Ի. Դոբրովեյնի դիմաքանդակը, Բեթհովենյան երաժշտության մեջ խորասուզված էություն, ամբողջովին երաժշտությամբ համակված կերպար: Դիտելով այս ստեղծագործությունը՝ քեզ չի թվում, թե այն կերտված է սառը, անկենդան մարմարից, այնքան հզոր է կատարման կամ ավելի ճիշտ ստեղծման պահը իր ջերմությամբ ու խորհրդավորությամբ: Աչքերի խորաթափանց նայվածքը, ավելի շուտ հայացք է դեպի մարդու ներաշխարհը, և կենտրոնացած, վերացած հոգեվիճակ է արտահայտում: Աչքերից ներքև աջից ու ձախից հոսող ձևերը, որ անցնում են այտոսկրների վրայով, արտահայտում են լարվածություն և նվիրվածություն, համառություն և պայ-



# ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ



քարող ոգի: Իսկ շուրթերի կիպ դրվածքը դրսևորում է անկոտրում կամք: Գուցե և այդպիսին չի եղել Դոբրովեյնն իր էությամբ, սակայն հանճարեղ Բեթհովենի երաժշտությունը դարեր շարունակ մարդկանց մղել է դեպի հերոսացում, դեպի լույս, ստիպելով լինել այնպիսին, ինչպիսին մենք տեսնում ենք Հակոբ Գյուրջյանի այս ստեղծագործության մեջ:

Հակոբ Գյուրջյանը կյանքի մեծ մասը անցկացրեց հայրենիքից հեռու՝ Փարիզում, ուր իր ստեղծած գրեթե բոլոր գործերը, այդ թվում՝ Մարգարիտ Ծիրվանզադե, Լև Տոլստոյ, Արշակ Չոպանյան, Մաքսիմ Գորկի, Սալոմե և այլն, թվով 500 ստեղծագործություն, նրա կտակի համաձայն, տեղափոխվեցին Երևանի պետական պատկերասրահ:

*ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆ*



digitised by A.R.A.R.@




# ԷՍԿԻՄՈՍՆԵՐԻՆ ՎԵՐԱԴԱՐՁՐԻՆ ԿԱՅԱԿԸ

Տասնյոթամյա անգլիացի Մայք Մեղդենն իր՝ բայդարկային սպորտով զբաղվող երեք ընկերների հետ, որոշեց կանադական էսկիմոսներին ապացուցել, որ ապակեթելից պատրաստված ժամանակակից կայակը չի զիջում նրանց ավանդական՝ գազանների մորթիներից կարվածին: Իսկ որսի համար նույնիսկ ավելի լավ է մոտորանավակից, որն իր հռնդյունով վախեցնում է թռչուններին ու ձկներին, չհաշված, որ թունավորում է առափնյա ջրերը:

— Էսկիմոսներին համոզել, որ կայակներ քշեն, նույնն է թե նրանց սառնարաններ վաճառել,— ծիծաղում էին լրագրողները:

Մի ժամանակ, իսկապես, էսկիմոսներն իրենց կայակ-բայդարկաներն էին նստում դեռ քայլել չսովորած: Նրանց ողջ կյանքը անցնում էր ջրի վրա: Իսկ հետո երևան եկան մոտորանավակները, որոնցով կարելի էր տնից ավելի հեռանալ, լինել այնտեղ, ուր թռչունները դեռևս վախի զգացում չունեին:Բայց հիմա նավակները գնալով շատանում են, իսկ որսը՝ ավելի ու ավելի քչանում:

Ժամանակակից կայակի արժանիքները ցուցադրելու համար անգլիացի

# ԱՄԱՌԸ, ՁՄԵՌԸ ԵՎ ՄԱՅՐՍ

*ՎԵՆԵՐԱ ԱՆԴՐԵԱՍՅԱՆ*

Ազգով-տակով մենք բոլորս տանել չենք կարողանում շոգը: Տաք ճաշ ուտելիս փոքր քեռուս դեմքը քրտնում է, ապրիլին հորաքույրս սկսում է թեթև շորեր հագնել, տատիս երեսը ամռան ամիսներին առավոտից իրիկուն կասկարմիր է լինում, իսկ ես, եթե անհարմար չզգամ՝ հոկտեմբերին էլ ամառային շոր կհագնեմ: Շոգը թշնամի է նաև պապիս, հորեղբորս, բոլոր քեռիներիս, մորաքրոջս... Բայց մորս շոգելը գերազանցում է բոլորին: Ձմեռն անցնում է թե չէ՝ սկսվում է նրա տառապանքը, որը տևում է մինչև աշնան վերջը: Ձմռանն էլ կարճ թևով է ներսուդուրս անում: Նույնիսկ ես, որ շոգից սարսափում եմ, այդպիսի ժամանակ ասում եմ. «Չես մրսու՞մ»: Իսկ նա, թե՝ «Չէ մի՜: Էս տաք օրը մարդ կմրսի՞»... Ամառը սկսվելուն պես նրա ննջարանը դառնում է մեր պատըշգամբը: Քնում է այդտեղ՝ մինչև ցըրտերն ընկնելը:

Այդ տարվա ուշ աշունը տաք էր, և մայրս դեռ միտք չուներ ներսում քնելու: Պառկում էր թախտին գցած փափուկ անկողնու մեջ ու քնում, իհարկե, նախօրոք գանգատվելով, թե՝ շոգ է:

Մի առավոտ վեր կացա անկողնուց և մոտենալով լուսամուտին՝ զարմացա. առատ, մեծ-մեծ փաթիլներով ձյուն էր



digitised by A.R.A.R.@

տղաները ընտրեցին կանադական ա-ռափնյա ամենավտանգավոր ծովա-խորշերից մեկը՝ Ֆրոբիշեր-բեյը: Ամառ թե ձմեռ այն լցված է բևեռասառույ-ցով ու պատված մառախուղով: Բայց տղաներն ապացուցեցին, որ ժամա-նակակից կայակով ճարպկորեն կա-րելի է նավարկել այսբերգների արան-քով:

Ընդամենը մեկ ժամվա ընթացքում բայդարկավարները երկու ծովափիղ որսացին: Ծովափին նրանց դիմավո-րող էսկիմոսները հարգալից տմբտըմ-բացնում էին գլուխները և ասում, որ մո-տորանավակով, իհարկե, անհնար է այդպես արագ ու աննկատ մոտենալ որսին:

Իրենց կայակներն ու դրանք պատ-րաստելու կաղապարները տղաները թողեցին էսկիմոսներին: Մեկնելիս նը-րանք հույս ունեին, որ էսկիմոսները կրկին կվերադառնան իրենց ավանդա-կան նավակներին, որը գոնե մի քիչ կթեթևացնի նրանց կյանքը հյուսիսի դժվարին պայմաններում:

---

տեղում. ամենուրեք ճերմակ էր: Երեկ ու՞մ մտքով կանցներ, թե այսօր ձյուն կգա: Ո՛չ քամի կար, ո՛չ էլ առաջին ձյունից առաջ տիրող խորհրդավոր, խաղաղ լռություն... Առաջին միտքը, որ եկավ գլուխս՝ մայրս էր. ինձ դուրս գցեցի և... ծիծա՞ղս եկավ, թե՞ լացս: Երևի երկուսն էլ: Պատշգամբի անկյու-նից ձյունը հանդարտ իջնում էր մորս վերմակի, բարձի, մազերի վրա: Միայն դեմքին ձյուն չկար, որովհետև կող-քի էր պառկել: Ես լեղաճաք, լացակու-մած վրա ընկա, որ արթնացնեմ: Չլի-նի՞ սառել է... Մայրս շրջվեց, ինձ նա-յեց, հետո՝ աչքը գցեց ճերմակած աշ-խարհին ու բացականչեց.

— Ա՜յ թե հով արեց, հա՜... Չեմ ու-զում, թե տեղիցս վեր կենամ...

*ՎԱՂԻՆԱԿ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ*

## ԴԱՀՈՒԿԱՎՈՐԸ

Ձյուն է իջնում,
Նստում սարին,
Ծածկում դաշտ ու
Արահետ,
Հեռվից-հեռու
Նա խաղում է
Արեգակի
Շողի հետ:
Ես խաղում եմ
Պսպղացող
Ձյուների մեջ
Օրնիբուն,
Արեգակը
Մայր է մտնում,
Նոր եմ միայն
Գնում տուն:
Որքա՜ն կուզի
Թող ցուրտ լինի,
Չեմ դողդողում
Ես ցրտից:
Մաքուր օդում
Ինչքան խաղում,
Այնքան լավ եմ
Զգում ինձ:

## Ե՞ՐԲ ԵՆ ՄՐՍՈՒՄ ԾՏԵՐԸ

— Վա՜յ, մայրի՛կ ջան, ձյուն է գալիս,
Արդեն եկավ ձմեռը:
Նայի՛ր, նայի՛ր, ծառի վրա
Դողդողում են ծտերը:
Փաթիլներ են կտցում նրանք,
Օգնություն են ինձ կանչում,
Գնամ բերեմ ծիտիկներին
Ու տաքացնեմ իմ ծոցում:
— Չէ՜, բալի՛կ ջան, նրանք շատ են,
Դու ո՞ր մեկին տաքացնես:
Լավ է, որ դու նրանց համար
Փոքրիկ սեղան պատրաստես:
Հացի փշրանք լցնես վրան,
Թող որ սոված չմնան:
Երբ կուշտ լինի, ցրտից դրսի
Ծիտիկը շատ չի մրսի:

digitised by A.R.A.R.@




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱ-ԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакция: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

# № 2 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1982



Շապիկի առաջին էջը՝ ԶԱՎԵՆ ԲԾՏԻԿՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ
Խմբագրական կոլեգիա՝
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆԶՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.

Գեղ. խմբագիր՝
Ա. ԿԻԼԻԿՅԱՆ
Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ
Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հանձնված է արտադրության 8.XII 81 թ.: Ստորագրված է տպագրության 26.II 1982 թ.: ՎՖ 01738: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակ՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 3,9 պայմ. մամ., 3,1 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 65052: Պատ. 2575: Գինը՝ 15 կ.

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան, Օրջոնիկիձեի պող. № 2:
Типография Издательства ЦК КП Армении, Ереван, пр. Орджоникидзе, 2.

© Պիոներ 1982

digitised by A.R.A.R.@




# ԴԱՍՏԱԿՈՎ ԳՆԴԱԿԱԽԱՂ



Խաղում են բռնցքաչափ գնդակով, ուղղանկյուն, սահմանագծված խաղահրապարակում, որի երկարությունը 50-ից 150 մետր է (նայած խաղացողների քանակին):

Մասնակիցները բաժանվում են երկու խմբի (յուրաքանչյուրում 4 և ավելի մարդ) և վիճակ գցելով որոշում են, թե որը լինի ներսի և որը դրսի խումբ: «Դրսիները» շարվում են վերին սահմանագծի աջ կողմում, «ներսիները» ցրվում են դաշտում: Դրսիներից մեկը փայտե դաստակը ձեռքին մի քանի քայլ առաջ է գալիս դեպի դաշտ և կանգնում նախապես գծված գծին: Նա հարվածողն է: Ներսիներից մեկն էլ գնդակը ձեռքին կանգնում է նրանից քիչ հեռու. դեմ-դիմաց: Սա էլ գնդակ գցողն է: Գցողը ափում պահած դիրքից գնդակը հանդարտ նետում է դաստակավորին, որը գնդակին դաստակով հարվածելուց հետո (գնդակը պետք է դաշտի սահմաններից չանցնի) «մեռած է» համարվում և դաստակն ընկերոջը փոխանցելով գնում կանգնում է խաղահրապարակի ձախ կողմում նախանշված ուղղանկյան մեջ: Հենց որ դրսեցու խաղընկերը գնդակն ուղարկում է դաշտ, ուղղանկյան մեջ գտնվող «մեռածները» պետք է փորձեն առանց ներսիներից գնդակահարվելու վազել-հասնել ներքևի սահմանագծին, ապա նաև ետ վերադառնալ: Եթե դա հաջողվում է, նրանք «ողջանում» են և նոր զարկի իրավունք ստանում, իսկ եթե ներսիները կարողանում են գնդակահարել որևէ մեկին, ապա խմբերը փոխում են իրենց դերերը:

### ԽԱՂԻ ԿԱՆՈՆՆԵՐԸ

1. «Մեռածը» ետ գալու իրավունք ունի միայն ոտքը ներքևի սահմանագծին դնելուց հետո: 2. «Մեռածներին» իրավունք է տրվում վերին գիծ վերադառնալու համար առիթի սպասել ներքևի սահմանագծին կանգնած: 3. Հենց որ դրսեցին ոտք դրեց վերևի կամ ներքևի սահմանագծին, նրան դիպած գնդակը չի հաշվվում: 4. Դրսիները գնդակահարվելուց խուսափելու համար դաշտի սահմաններից դուրս գալու իրավունք չունեն: 5. Եթե դրսեցին կարողանում է որսալ իրեն հարվածող գետնին չդիպած գնդակը, այն կարող է դուրս շպրտել դաշտի սահմաններից: 6. Ներսիները կարող են «մեռածներին» հետապնդել դաշտով մեկ, գնդակը փոխանցել ընկերոջը և այլն: 7. Դրսիները իրավունք ունեն իրենց հարվածի հերթը տալ ընկերոջը: 8. Վերջին հարվածողին 3 զարկի իրավունք է տրվում: 9. Զարկողն էլ կարող է հարվածից անմիջապես հետո փորձել «ողջանալ» (վազել ներքևի սահմանագիծը, ետ գալ). սակայն այդ նա պետք է կարողանա անել առանց ներքևի սահմանագծին կանգնելու իրավունքի:

digitised by A.R.A.R.@

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.     ԻՆԴԵՔՍ՝ 77806

# ՁՄԵՌՎԱ ԱՅՍ ՑՐՏՈՒՄ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

Ծափ է տալիս քամին,
Ջյան վերմակը խառնում,
Փաթիլներն են շուրջն իմ
Աստղերի պես փայլում:
Ծիր Կաթինն է արթուն
Իր խարույկը վառել,
Թվում է, թե օդում
Լռությունն է սառել,
Լուսնի ցոլքն է հոսում,
Օծում բլուր ու ձոր,
Այնքան լույս կա դրսում,
Կարծես ցերեկ է նոր:
Ահա տեսնում եմ պարզ
Կատարները ձյունած,
Եվ իջնում է վրաս
Մտորումը նրանց:

digitised by A.R.A.R.@